## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։*

*Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։*

*Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։*

*Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։*

*Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։*

*Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։*

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**11** ՆՈՅԵՄԲԵՐ 1975

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



### СТАТЬИ



### НАВСТРЕЧУ XXV СЪЕЗДУ КПСС



### ПАРТИЙНАЯ ЖИЗНЬ



### ВОПРОСЫ ЭКОНОМИКИ



### ЗНАМЕНАТЕЛЬНЫЕ ДАТЫ



### ОБЗОР ПЕЧАТИ



### ТРИБУНА МОЛОДОГО НАУЧНОГО РАБОТНИКА








# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԼՈՒՍԱՇՈՂ ՈՒՂԻՈՎ

**Հ**ԻՍՈՒՆՈՒԹ ՏԱՐԻ Է ԱՆՑԵԼ այն պատմական օրվանից, երբ լեգենդար Ավրորայի համազարկերը ազդարարեցին աշխարհի հեղափոխական նորացման, կապիտալիզմից սոցիալիզմին անցման դարաշրջանի սկիզբը։ Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները, լենինյան կուսակցության ղեկավարությամբ, իշխանությունն իրենց ձեռքը վերցրին, ստեղծեցին նոր տիպի պետություն, աշխարհում առաջին աշխատավորական պետությունը։

Այդ դարակազմիկ հեղափոխության օրը ամենանշանակալի տարեթիվն է ոչ միայն մեր երկրի պատմության մեջ, այլև ամբողջ աշխատավոր մարդկության կյանքում։ Հոկտեմբերի տոնը առաջադեմ մարդկության տոնն է։ «Կանցնեն դարեր,— ասել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը «Սոցիալիզմի մեծ հաղթանակի հիսուն տարին» զեկուցման մեջ,— մարդկությունը կհասնի այնպիսի բարձունքների, որոնք կգերազանցեն մեր ժամանակակիցների ամենահանդուգն երևակայությունը, շատ իրադարձություններ կարող են մոռացվել։ Բայց 1917 թվականի նոյեմբերի 7-ը՝ այն օրը, երբ կատարվեց առաջին հաղթական սոցիալիստական հեղափոխությունը, ընդմիշտ կմնա գալիք սերունդների հիշողության մեջ» (Լենինյան կուրսով, հ. 2, էջ 103)։

Հոկտեմբերի հաղթանակը լենինիզմի հաղթանակն է, լենինյան կուսակցության գաղափարների և գործերի հաղթանակը։ Մեծ Հոկտեմբերը հանդիսացավ սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսության փայլուն հաստատումն ու պրակտիկ մարմնավորումը. բոլշևիկյան կուսակցության ստրատեգիայի ու տակտիկայի հմուտ իրականացման արգասիքը։

Մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով զինված մեր կուսակցությունն էր, որ կարողացավ հարթել կապիտալիզմից դեպի սոցիալիզմ տանող ուղին։ Նվաճելով բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների անսահման վստահությունը, նա կարողացավ ստեղծել զարգացած սոցիալիստական հասարակարգ, համաժողովրդական պետություն, աշխարհի խոշորագույն երկիրը դուրս բերել կոմունիստական շինարարության մայրուղի։

Սկզբնավորելով համաշխարհային պատմության նոր դաշարջանը, մեծ Հոկտեմբերը մեր երկրի ժողովուրդների առջև բացեց չտեսնված լայն հորիզոններ։ Ինչպես մեծ Լենինն էր ասում. «Խորտակեց բոլոր հին արգելքները, ջարդեց հնացած շղթաները, դուրս բերեց աշխատավորներին նոր կյանքի ինքնուրույն ստեղծագործության ճանապարհը» (Երկեր, հ. 26, էջ 498)։

ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ և կոմունիստական կուսակցության իմաստուն քաղաքականության շնորհիվ մեր երկրում հաջողությամբ իրագործվեց ազգային հարցի լենինյան ծրագիրը։ Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը հանդիսացավ հենց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորումը, որն ապահովեց բոլոր ազգերի ու ժողովուրդների քաղաքական, իրավական և սոցիալ-տնտեսական հավասարությունը միասնական պետության մեջ։ Դրվեց ազգերի կամավոր միավորման հիմքը, միավորում, որը խարսխված է «ամենալրիվ վստահության վրա, եղ-

բայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 368): Սոցիալական և ազգային ճնշման, ազգային հակամարտությունների ու թշնամանքի հին աշխարհի փոխարեն երևան եկավ մի նոր, ազատ հասարակարգ՝ հիմնված տարբեր ազգությունների եղբայրական միասնության վրա:

Միասնական դաշնակցային պետության շրջանակներում Սովետական Միության բոլոր ժողովուրդները հերոսական պայքար ծավալեցին սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի կենսագործման համար: Նրանց ջանքերով պատմական կարճ ժամանակաշրջանում երկրում կատարվեցին սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումներ. իրականացվեցին էլեկտրիֆիկացում, ինդուստրացում, գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխում, կուլտուրական հեղափոխություն: Նյութական միջոցների ու ջանքերի համակենտրոնացումը, սովետական ժողովուրդների եղբայրական փոխօգնությունը հնարավորություն ընձեռեցին բոլոր հանրապետություններում ստեղծելու բարձր զարգացած արդյունաբերություն, խոշոր մեքենայացված գյուղատնտեսություն: Ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասերը դարձան տնտեսապես զարգացած սովետական հանրապետություններ, ծաղկեց նրանց մշակույթը՝ հագեցած սոցիալիստական բովանդակությամբ:

Սովետական Միության տնտեսական բուռն աճը հուսալի հիմք ստեղծեց երկրի բոլոր ժողովուրդների բարեկամության ու կուլտուրայի անշեղ վերելքի համար: Տնտեսության, հասարակական-քաղաքական հարաբերություններում կատարված խոշորագույն վերափոխումների շնորհիվ սովետական մարդկանց, երկրի բոլոր ազգերի ու ազգությունների միջև հաստատվեցին նոր, սոցիալիստական հարաբերություններ, ծնվեց և ամրապնդվեց ժողովուրդների լենինյան բարեկամությունը: Այդ բարեկամությունը Մեծ Հոկտեմբերի անգնահատելի նվաճումն է, մեր հայրենիքի հզորության հուսալի հիմքը, սոցիալիստական հասարակության առաջընթացն ապահովող շարժիչ ուժերից մեկը:

Սովետական ժողովուրդների բարեկամությունը, հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը պատվով քննություն բռնեցին քաղաքացիական կռիվների, առաջին հնգամյակների, Հայրենական պատերազմի և սոցիալիստական շինարարության հետպատերազմյան տարիներին: Բազմազգ սովետական պետության կենսական ուժի և հզորության համար, մեր երկրի ժողովուրդների լենինյան անխախտ ու ամուր բարեկամության համար դաժան փորձություն հանդիսացավ հատկապես Հայրենական մեծ պատերազմը: Սովետական հայրենիքի բոլոր ժողովուրդները, բոլոր ազգությունների որդիներն ու դուստրերը, պայքարի ելնելով նենգ թշնամու դեմ, ցույց տվեցին չտեսնված արիության ու հերոսության օրինակներ: Գերմանական ֆաշիզմի նկատմամբ տարած պատմական հաղթանակը ՍՍՀՄ ժողովուրդների լենինյան բարեկամության, սովետական մարդկանց բարոյա-քաղաքական միասնության փայլուն ապացույցն էր:

Մեր երկրի ժողովուրդների բարեկամության ցեմենտող ուժը ռուս մեծ ժողովուրդն է, որը նշանակալի դեր խաղաց ՍՍՀՄ կազմավորման, սովետական ժողովուրդներին մեկ միասնական ընտանիքում միավորման գործում և հսկայական ավանդ է ներդնում սովետների երկրի տնտեսական և քաղաքական հզորության ամրապնդման համար մղվող պայքարում:

Տոնելով Մեծ Հոկտեմբերի 58-րդ տարեդարձը, այսօր սովետական մարդիկ հպարտության զգացումով են ամփոփում կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում փառավոր մեծագործությունների արդյունքները: Իսկ դրանք ակնառու են հասարակության գործունեության կարևորագույն ոլորտում՝ ժողովրդական տնտեսության մեջ: Ժամանակակից սովետական էկոնոմիկան բնութագրվում է արտադրության վիթխարի մասշտաբներով, աճի արագ և կայուն տեմպերով: Դրա մասին է վկայում այն փաստը, որ միայն վերջին տասը տարում երկրի ազգային եկամուտը կրկնապատկվել է: Այդ ժամանակամիջոցում ստեղծվել է արտադրության ավելի մեծ պոտենցիալ, քան սովետական պետության ամբողջ նախորդ պատմության ընթացքում: Բավա-



կան է նշել, որ ՍՍՀՄ-ում արդյունաբերական արտադրանքի տարեկան ծավալը, նախահեղափոխական ժամանակաշրջանի համեմատությամբ, մեծացել է ավելի քան 120 անգամ: Մեր երկիրը տալիս է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտավորապես 20 տոկոսը, այն դեպքում, երբ ՍՍՀՄ-ի բնակչությունը կազմում է աշխարհի բնակչության ընդամենը 6,5 տոկոսը:

Երկրի ամբողջ էկոնոմիկայի հետ անխզելիորեն շաղկապված զարգանում է սոցիալիստական գյուղատնտեսությունը: Ագրարային քաղաքականությունը միշտ էլ եղել է կուսակցության ուշադրության կենտրոնում: ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումից հետո հետևողականորեն իրագործվում է գյուղատնտեսության արտադրության կայուն վերելքի ծրագիր: Հենց դրա շնորհիվ է, որ վերջին տասը տարում գյուղատնտեսության արտադրանքն ավելացել է 1,4 անգամ:

Մեր երկիրը լուծում է աշխարհաշեն բնույթի վեհ խնդիրներ: Ամեն տարի գործարկվում են հարյուրավոր նոր ձեռնարկություններ: Կառուցվում են ինդուստրիալ և էներգետիկ այնպիսի հսկաներ, ինչպիսիք են, օրինակ, Կամայի ավտոմոբիլային գործարանը և Սայանա-Շուշենսկոյեի հիդրոէլեկտրակայանը, շինվում է Բայկալ—Ամուր մայրուղին, հայրենիքին ի սպաս են դրվում Սիբիրի և Հեռավոր Արևելքի վիթխարի հարստությունները:

Հիսունութ տարում կատարված խոր ու բազմակողմանի սոցիալ-տնտեսական փոփոխությունների հիման վրա որակապես նոր մակարդակի է բարձրացել մեր երկրի հասարակությունը: Կատարվել է մեծ Լենինի կանխատեսությունը, որն ընդգծում էր թե սոցիալիզմը «ստեղծում է մարդկային համակեցության նոր, բարձրագույն ձևեր» (Երկեր, հ. 21, էջ 33): Ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում, «Սոցիալիստական շինարարության տարիներին մեր երկրում առաջացավ մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը. էջ 101), որը զոդված է մարքս-լենինյան գաղափարախոսությամբ, կոմունիստական հասարակարգի կառուցման վսեմ նպատակների ընդհանրությամբ:

ՄԵՐ ԵՐԿՐԻ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ միասնական ընտանիքում աննախադեպ վերելք է ապրում նաև Սովետական Հայաստանը, որի համար Նոյեմբերը կրկնակի տոն է: Մեծ Հոկտեմբերի շնորհիվ ազատագրված հայ ժողովուրդը նոյեմբերի 29-ին նշում է նաև իր վերածնության 55-ամյակը:

Անցած տարիներին, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործման շնորհիվ, մեր հանրապետության աշխատավորները մեծ հաջողություններ են ձեռք բերել ժողովրդական տնտեսության, գիտության ու մշակույթի, հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում: Երբեմնի աղքատության, սովի ու որբերի երկիր Հայաստանն այսօր դարձել է զարգացած արդյունաբերության, առաջավոր գյուղատնտեսության, սոցիալիստական բարձր կուլտուրայով հանրապետություն: Սովետական իշխանության տարիներին մեզ մոտ ստեղծվել են տեխնիկապես զինված շուրջ 700 ժամանակակից արդյունաբերական ձեռնարկություններ: Հայաստանի ինդուստրիայի այսօրվա դեմքը բնորոշում են գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունը, էլեկտրոնիկան, ռադիոտեխնիկական, քիմիական, էլեկտրատեխնիկական ու սարքաշինական արդյունաբերությունը: Հայաստանի ինդուստրիալ զարգացման մասին է վկայում այն փաստը, որ արդյունաբերության բաժինն ամբողջ հասարակական արդյունքի մեջ կազմում է գրեթե 70 տոկոս: Այժմ մեր հանրապետության արդյունաբերությունը երկու օրում արտադրում է ավելի շատ արտադրանք, իսկ մեկ օրում՝ ավելի էլեկտրաէներգիա, քան ողջ 1928 թվականին:

Արտադրաուժերի բուռն զարգացման շնորհիվ հիմնովին փոխվել է Հայաստանի տնտեսական քարտեզը: Արդյունաբերական այնպիսի քաղաքների կողքին, ինչպիսիք են Երևանը, Լենինականը, Ղափանը, Ալավերդին, հանդես են եկել ինդուստրիալ նոր կենտրոններ՝ Քաջարանը, Կիրովականը, Հրազդանը, Կամոն, Չարենցավանը, Աշտարակը, Աբովյանը, Արթիկը և այլն: Ակնհայտ

է մեր հանրապետության բաժինը երկրում թողարկվող շարժական էլեկտրակայանների, գեներատորների, մետաղահատ հաստոցների, ավտոմատացման և հաշվողական տեխնիկայի միջոցների, ժամացույցների, էլեկտրալամպերի, սինթետիկ կաուչուկի, ավտոդողերի, մոլիբդենային կոնցենտրատների, զտված պղնձի ընդհանուր ծավալում:

Կուսակցության ագրարային քաղաքականության շնորհիվ արմատական տեղաշարժեր են կատարվել նաև հանրապետության գյուղատնտեսության բնագավառում: Դրանք առանձնապես նկատելի են վերջին տարիներին: Մեքենայացումը, ոռոգումը, պարարտացումն ու քիմիացումը բարձրացրել են հողագործության կուլտուրան, գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականությունը:

Արտադրության և գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված հաջողությունները նպաստել են աշխատավորների նյութական մակարդակի բարձրացմանը, նրանց ռեալ եկամուտների աճին: Կուլտուրական հեղափոխության շնորհիվ Հայաստանը դարձել է համատարած գրագիտության երկիր, ծածկվել դպրոցների, տեխնիկումների, բուհերի խիտ ցանցով: Լայն զարգացում է ստացել գիտությունը: Հանրապետությունում գործում են 110-ից ավելի գիտահետազոտական հաստատություններ, ուր զբաղված են մոտ 15 հազար գիտնականներ: Արագ տեմպերով զարգանում են հատկապես գիտության այնպիսի ժամանակակից ճյուղեր, ինչպիսիք են՝ աստղաֆիզիկան, տեսական ֆիզիկան, միջուկային ֆիզիկան, մաթեմատիկան, հաշվողական տեխնիկան, քիմիան, մեխանիկան, երկրաբանությունը, բիոքիմիան և այլ ճյուղեր:

Սովետական իշխանության տարիներին ժողովրդական տնտեսության և կուլտուրայի ասպարեզներում հայ ժողովրդի հաջողություններն ըստ արժանվույն են գնահատվել կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության կողմից: Հայկական ՍՍՀ պետական դրոշակի վրա շողշողում են Լենինի երկու, Հոկտեմբերյան հեղափոխության և Ժողովուրդների բարեկամության շքանշանները: Քառակի շքանշանակիր մեր հանրապետությունը ներկայումս արժանի տեղ է գրավում երկրի միասնական տնտեսական սիստեմում:

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ սոցիալիստական վերափոխումների ուղի բաց արեց ոչ միայն Ռուսաստանի, այլև մյուս երկրների ժողովուրդների համար: Այն կոմունիստական քաղաքակրթության ձևավորման և զարգացման հիմքը դրեց: Հեղափոխության հաղթանակը նշանավորեց ոչ միայն սոցիալական կարգերի փոփոխում մեկ երկրում. այն ավետեց շահագործման, իմպերիալիստական ճնշման, գաղութակալության վերացման սկիզբը, բռնության և պատերազմների վրա հիմնված կապիտալիստական հասարակարգի մայրամուտը:

Հոկտեմբերի գաղափարները թափանցեցին երկրագնդի բոլոր անկյունները, դարձան բոլոր ճնշվածների դրոշը, նրանց ոտքի հանեցին ազատության համար պայքարի: Հոկտեմբերը հեղափոխական վերելքի ալիք առաջ բերեց մոլորակի բոլոր մասերում, մեր դարաշրջանը դարձրեց իրեն թափով, մասշտաբով ու խորությամբ մինչ այդ չտեսնված, սոցիալական և քաղաքական վերափոխումների դարաշրջան:

Սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսության հիմնական դրույթները հետագայում իրենց կիրառությունը գտան աշխարհի շատ երկրներում և իրենց փայլուն մարմնավորումը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմում: Վերակառուցելով ժողովուրդների հասարակական կյանքի բոլոր կողմերը, Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում, Կուբայում տեղի ունեցած սոցիալիստական հեղափոխությունները եղբայրական երկրների միջև ստեղծեցին սկզբունքորեն նոր հարաբերություններ: Սոցիալիստական համագործակցության երկրների ժողովուրդների միասնությունն ու համագործակցությունը հնարավորություն են տալիս դիմակայել իմպերիալիզմի ճնշմանը, պահպանել նոր հասարակարգի հաջող կառուցման բարենպաստ պայմաններ:

Մեծ Հոկտեմբերի փառավոր, չխամրող գործը ապրում և հաղթանակում է



միջազգային բանվորական շարժման պատմական նվաճումների մեջ, ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումների հաջողության մեջ:

Արդի աշխարհում ուժերի հարաբերակցությունն անշեղորեն փոխվում է հօգուտ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի: Այսօր առանց չափազանցության կարելի է ասել, որ այժմ չկա միջազգային մի պրոբլեմ, որը կարող է լուծվել առանց սոցիալիստական համագործակցության երկրների մասնակցության: Եվ իրենց այդ ազդեցությունը սոցիալիստական երկրներն օգտագործում են խաղաղության պահպանման համար:

ԻՆՉՊԵՍ ՀԱՅՏՆԻ Է, ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԾՆՈՒՆԴ սովետական իշխանության առաջին օրենսդրական ակտը խաղաղության մասին դեկրետն էր: Համաշխարհային պատերազմի խեղդող մթնոլորտում, չդադարող արյունալի մարտերի պայմաններում այդ դեկրետը դարձավ լույսի այն կենդանի ճառագայթը, որին այնպես երկար սպասում էին մարդիկ: Այն հավաստեց, որ մոլորակի մեկ վեցերորդ մասում ստեղծվել է նոր հասարակություն, որի արտաքին քաղաքականության հիմնարար սկզբունքը խաղաղությունն է:

Սովետական Միության արտաքին քաղաքականությունը դասակարգային է, ինտերնացիոնալ իր բուն էությամբ: Այն պաշտպանում է ոչ միայն սովետական ժողովրդի, սոցիալիզմի երկրների ժողովուրդների շահերը, այլև արտահայտում է միջազգային բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահագրգռվածությունը խաղաղության նկատմամբ, նպաստում կոմունիստական շարժմանը, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի միասնության ամրապնդմանը: «Միջազգային գործերում մեր կուսակցության և պետության գիծը քաջ հայտնի է,— ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը Մոսկվայի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների հետ ունեցած հանդիպման ժամանակ:— Այն բխում է սոցիալիզմի բուն էությունից և ամբողջովին ենթարկված է սովետական մարդկանց ու սոցիալիստական երկրների մեր եղբայրների խաղաղ ստեղծաբար աշխատանքի շահերին: Լինելով հետևողականորեն դասակարգային քաղաքականություն, այն ծառայում է բոլոր ժողովուրդների խաղաղության, ազատության և անվտանգության գործին, նրանց ազգային անկախության և սոցիալական առաջադիմության գործին, համապատասխանում է ամբողջ աշխարհի ամենալայն մասսաների շահերին»:

Մեր երկրի, սոցիալիստական համագործակցության երկրների աշխատավորները և աշխարհի բոլոր առաջադեմ մարդիկ Հոկտեմբերի 58-րդ տարեդարձը դիմավորում են ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խաղաղության ծրագրի հաջող իրականացման շնորհիվ միջազգային լարվածության թուլացման մթնոլորտում: Դա մեր փառապանծ կոմունիստական կուսակցության, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի և անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի անխոնջ գործունեության արդյունքն է: Հենց մեր կուսակցության ու կառավարության ակտիվ գործունեության, սոցիալիստական համագործակցության երկրների համաձայնեցված քաղաքականության, բոլոր առաջադեմ ու խաղաղասեր ուժերի օժանդակության շնորհիվ է հաջողվել նկատելիորեն ամրապնդել ժողովուրդների խաղաղության և անվտանգության հիմքերը, նվազեցնել միջուկային զենքի սպառնալիքը: Մեր կուսակցության, սովետական կառավարության և եղբայրական սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականության հաղթանակն էր Հելսինկիի համաեվրոպական խորհրդակցության հրավիրումն ու նրա հաջող ավարտը, խորհրդակցություն, որը, ինչպես նշեցին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահությունն ու ՍՍՀՄ Մինիստրների սովետը «Եվրոպայի անվտանգության-համագործակցության խորհրդակցության արդյունքների մասին» փաստաթղթում, «սկիզբ դրեց լարվածության թուլացման նոր փուլին, կարևորագույն քայլ եղավ խաղաղ գոյակցության և տարբեր հասարակարգ ունեցող պետությունների իրավահավասար համագործակցության հարաբերությունների հաստատման սկզբունքներն ամրապնդելու ճանապարհին»:

ՍՍՀՄ-ը անդուլ պայքար է մղում, որպեսզի խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքները լիովին դառնան միջազգային հարաբերությունների հանրաճանաչ նորմեր։ Արդեն կուտակվել է հասարակական այլ սիստեմի պատկանող երկրների հետ փոխադարձ կապերի ոչ քիչ դրական փորձ։ Զգալի տեղաշարժեր են կատարվել հատկապես Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների հարաբերությունների զարգացման ասպարեզում. դրան նպաստեցին առաջին հերթին սովետա-ամերիկյան բարձր մակարդակի հանդիպումները, որոնք բարենպաստ ազդեցություն գործեցին միջազգային ողջ իրադրության վրա։ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև հարաբերությունների լավացման, վստահության, փոխըմբռնման աճման վկայությունը եղավ «Սոյուզ—Ապոլոն» ծրագրով երկու երկրների տիեզերագնացների համատեղ թռիչքը, որն ավարտվեց մեծ հաջողությամբ։

Սովետական մարդիկ հպարտանում են, որ միջազգային ասպարեզում մեր երկրի հեղինակությունն ու ազդեցությունն աճում են, որ ՍՍՀՄ-ը հանդես է գալիս որպես խաղաղության ու առաջընթացի դրոշակակիր, մարդասիրական իր քաղաքականությամբ նպաստում է համաշխարհային սոցիալիզմի ամրապնդմանը, հետևողականորեն վարում իրենց անկախության ու ազատության համար պայքարող ժողովուրդներին համակողմանիորեն օգնելու և աջակցելու կուրս։

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ հեղափոխության 58-ամյակի բերկրալի տոնը սովետական ժողովուրդը նշում է կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումների հաջող կենսագործման, իններորդ հնգամյակի եզրափակիչ տարվա առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու, ՍՄԿԿ հերթական XXV համագումարը հայրենանվեր գործերով դիմավորելու համար մղվող ոգեշունչ պայքարի պայմաններում։ Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ՍՍՀՄ բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և սովետական մտավորականությունը ՍՄԿԿ XXIV համագումարից հետո անցած ժամանակաշրջանում նոր, խոշոր հաջողությունների են հասել արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու մշակույթի զարգացման ասպարեզում։ Բավական է ասել, որ միայն հնգամյակի չորս տարիների ընթացքում արդյունաբերական արտադրանքի ծավալն աճել է ավելի քան մեկ երրորդով և գերազանցել նախորդ հնգամյակի ցուցանիշները։ Իններորդ հնգամյակում ազգային եկամտի աճը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, կկազմի մոտ 35 տոկոս։ Ավելի է մեծացել սովետական պետության տնտեսական և պաշտպանական հզորությունը, զգալիորեն բարձրացել է ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակը։

ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ծրագրի հաջող կատարման մասին են վկայում նաև հնգամյակի եզրափակիչ տարվա նախնական արդյունքները։ ՍՍՀՄ Կենտվիճվարչության հաղորդագրություններից երևում է, որ 1975 թ. անցած ինն ամիսներին զգալիորեն արագացել են արտադրության և աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, բարձրացել է հանրային արտադրության արդյունավետությունը։ Պլանից ավելի իրացվել է 5 մլրդ ռուբլու արտադրանք, արդյունաբերական արտադրանքի աճն անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ կազմել է 7,8 տոկոս, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 6,1 տոկոսով։

Համաժողովրդական տոնը լավագույն ցուցանիշներով են դիմավորում նաև գյուղատնտեսության, տրանսպորտի, կապի և շինարարության բնագավառների աշխատողները։

Իններորդ հնգամյակի սոցիալ-քաղաքական արդյունքները մեկ անգամ ևս ապացուցում են, որ մեր հաջողությունների գրավականը կուսակցության ու ժողովուրդների սերտ միասնության մեջ է։ Այդ միասնությունը մեր հասարակության ուժի և հզորության հիմքն է, որը մեզ հնարավորություն է ընձեռում հաղթահարելու բոլոր դժվարությունները, լուծելու ամենաբարդ խնդիրները և նորանոր հաջողությունների հասնելու կոմունիստական շինարարության բոլոր



բնագավառներում։ Իսկ այդ հաջողություններն ու հասումներն առավել մեծ կլինեն գալիք նոր հնգամյակում։ ՍՄԿԿ հերթական XXV համագումարը պատմական խոշոր իրադարձություն կլինի մեր կուսակցության, ժողովրդի կյանքում, կամփոփի տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում այս հնգամյակում կուտակված փորձը, կբացի մեր հասարակության հետագա սոցիալ-տնտեսական զարգացման նոր հեռանկարներ։

ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՓԱՌԱՊԱՆԾ ՏՈՆԸ, ինչպես նաև Հայաստանում սովետական կարգերի հաստատման 55-րդ տարեդարձը քաղաքական ու աշխատանքային բուռն վերելքի պայմաններում են դիմավորում նաև մեր հանրապետության աշխատավորները։ Գործարար մրցություն ծավալելով և հարվածային հերթափոխի կանգնելով՝ ի պատիվ այդ նշանավոր տարելիցների, նրանք ձգտում են անշեղորեն կենսագործել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, հաջողությամբ նվաճել հնգամյակի եզրափակիչ տարվա բնագծերը, դրանով իսկ՝ նոր, առաջընթաց քայլ կատարել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ճանապարհին։ Դրա փայլուն վկայությունն են ընթացիկ տարվա անցած ժամանակաշրջանի հաջողություններն ու պետական առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարման գոհացուցիչ արդյունքները։ Նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, անցած երեք եռամսյակներում զգալիորեն աճել են հանրապետության արդյունաբերական արտադրանքի թողարկման (9,3 տոկոսով) և իրացման (9,2 տոկոսով) ծավալը, ինչպես նաև մյուս ցուցանիշները։ Արդյունաբերական արտադրանքի իրացման իննամսյա պլանը կատարվել է 102,8, իսկ աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը գերակատարվել է 1,9 տոկոսով։ Տարեսկզբից պլանից ավելի իրացվել է 74,3 մլն ռուբլու արդյունաբերական արտադրանք։

Նախահամագումարյան մրցության մեջ լուրջ հաջողությունների են հասել նաև գյուղատնտեսության բնագավառի աշխատողները։ Նրանք ժամկետից շուտ կատարեցին պետությանը հացահատիկի վաճառքի ընթացիկ տարվա ժողովրդատնտեսական պլանը և սոցիալիստական պարտավորությունները։ Հասկավոր կուլտուրաների հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 18,4 ցենտներ, անցած տարվա 15,8-ի փոխարեն։ 1974 թվականի համեմատությամբ բարձր է նաև ծխախոտի, կարտոֆիլի, բանջարեղենի բերքը։ Շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ արդեն կատարել են գյուղատնտեսական մթերքների վաճառքի հնգամյա պլանները։

Այս օրերին, երբ հետզհետե ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը, ուրախալի շատ լուրեր են ստացվում արդյունաբերական ձեռնարկություններից, կառույցներից, կոլտնտեսություններից, սովխոզներից, գիտահետազոտական հաստատություններից։ Աշխատանքային շատ կոլեկտիվներ, արտադրության բազմաթիվ առաջավորներ զեկուցում են ոչ միայն եզրափակիչ տարվա, այլև հնգամյա պլանը կատարելու և գերակատարելու մասին։ Հայրենանվեր աշխատանքի լավ օրինակ տվեցին Երևանի ալյումինի գործարանի, Իջևանի գորգագործական կոմբինատի, «Քաջարանշին» տրեստի, Անիի շրջանի Ջրակապի, Մասիսի շրջանի Այնթափի, Ախուրյանի շրջանի Հովունիի կոլտնտեսությունների կոլեկտիվները, որոնք հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու և տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշների հասնելու համար պարգևատրվեցին Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրերով, արժանացան մրցանակների ու փոխանցիկ դրոշների։ Զգալիորեն գերազանցելով նախատեսված կոնտրոլ թվերը, իրենց հնգամյա առաջադրանքները երեք ամիս շուտ կատարեցին նաև հանրապետության գազային տնտեսությունների կոլեկտիվները։ Հոկտեմբերյան տոնի նախօրյակին գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների հնգամյա առաջադրանքները կատարելու մասին զեկուցեցին Արտաշատի շրջանի բանջարաբույծներն ու Նոյեմբերյանի շրջանի այգեգործները.

ֆսկ խաղողի հանձնման այս տարվա պլանը գերակատարելու մասին՝ Հոկտեմբերյանի, Մասիսի խաղողագործներն ու Թալինի պտղաբույծները:

Հանրապետությունում մեծ խանդավառություն է առաջ բերել «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի պատմական որոշումը, որը Հայաստանի բարօրության նկատմամբ հարազատ կուսակցության, սովետական կառավարության և անձամբ Լ. Ի. Բրեժնևի կողմից ցուցաբերվող հայրական հոգատարության փայլուն արտահայտությունն է, եղբայրական ժողովուրդների փոխօգնության և անխախտ բարեկամության վկայությունը: Այն գործողությունների մարտական, կոմպլեքսային ծրագիր է, որի հաջող իրականացումը հետագա առաջընթացի պայծառ հեռանկարներ կբացի և հանրապետության էկոնոմիկան կբարձրացնի զարգացման որակական նոր աստիճանի:

Կուսակցության XXV համագումարի նախապատրաստության ճանապարհին կարևոր ուղենիշ հանդիսացավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի հուլիսյան պլենումը, որը քննարկեց ՀԿԿ Կենտկոմի քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցումը՝ «Հանրապետության կուսկազմակերպությունների խնդիրները» Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումը կատարելու և ՍՄԿԿ XXV համագումարը արժանավայել դիմավորելու վերաբերյալ»: Խորին գոհունակությամբ ընդգծելով այդ ծրագրային որոշման քաղաքական, սոցիալական, տնտեսական հսկայական նշանակությունը մեր հանրապետության համար, ՀԿԿ Կենտկոմի պլենումը միաժամանակ նշեց կոնկրետ ու գործնական այն ուղիներն ու մեթոդները, որոնց միջոցով կուսկազմակերպություններն ու աշխատավորական կոլեկտիվները պետք է հաջողությամբ լուծեն մեր հանրապետության էկոնոմիկայի հետագա զարգացման խնդիրները:

Հանրապետության կուսակցական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների, սովետական ու տնտեսական բոլոր մարմինների առաջնահերթ խնդիրն է՝ գործնական միջոցներ մշակել իրենց աշխատանքներում եղած թերությունների ու բացթողումների վերացման համար, ըստ ամենայնի բարձրացնել աշխատավորական զանգվածների քաղաքական ու արտադրական ակտիվությունը, նրանց ջանքերն ուղղել ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ սահմանված բոլոր առաջադրանքների ժամանակին կատարմանը, ՀԿԿ Կենտկոմի հունվարյան և հուլիսյան պլենումների որոշումների անշեղ իրականացմանը:

Մինչև հնգամյակի ավարտը շատ քիչ ժամանակ է մնացել: Անհրաժեշտ է յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվում հանգամանորեն վերլուծել անցած ամիսների աշխատանքի արդյունքները, օբյեկտիվորեն գնահատել իրերի վիճակը, բացահայտել և գործողության մեջ դնել եղած բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները, մոբիլիզացնել աշխատավորների ուժերն ու եռանդը եզրափակիչ տարվա պետական առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները անթերի կատարելու, ՍՄԿԿ XXV համագումարն արժանավայել դիմավորելու համար:

ՆՇԵԼՈՎ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՓԱՌԱՊԱՆԾ տարելիցը, Սովետական Միության բազմամիլիոն աշխատավորներն է՛լ ավելի են համախմբվում հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը, ջանում հայրենանվեր աշխատանքով ու նորանոր նվաճումներով ավելի հզոր ու ծաղկուն դարձնել մեր սոցիալիստական հայրենիքը, ծանրակշիռ ավանդ ներդնել կոմունիստական հասարակարգի կառուցման գործում:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԴՊՐՈՑԻ ԱՐԴԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

ՎԵՐՋԵՐՍ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ իններորդ գումարման Գերագույն սովետի առաջին սեսիան քննարկեց ժողովրդական կրթության վիճակի ու դրա հետագա բարելավման հարցը և հաստատեց ժողովրդական կրթության վերաբերյալ Հայկական ՍՍՀ օրենքը: Այսօր հպարտությամբ ենք նշում, որ մեզ մոտ ներկայումս ավելի քան մեկ միլիոն մարդ ընդգրկված է ուսուցման տարբեր օղակներում, փաստորեն հանրապետության յուրաքանչյուր երրորդ բնակիչը սովորում է: Բավական է նշել, որ 1.615 հանրակրթական դպրոցներում ընդգրկված է ավելի քան 688 հազար աշակերտ, 12 բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 53 հազարից ավելի ուսանողներ: Մոտավորապես նույնքան պատանիներ ու աղջիկներ կրթություն են ստանում հանրապետության 64 միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում:

Ժողովրդական կրթության համակարգը կոչված է պատրաստելու կոմունիստական հասարակարգի համակողմանի զարգացած ակտիվ կառուցողներ՝ տոգորված մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով, սովետական օրենքների և սոցիալիստական իրավակարգի նկատմամբ հարգանքի, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, ֆիզիկապես առողջ, ընդունակ միշտ հաջողությամբ աշխատելու տնտեսական ու սոցիալ-կուլտուրական շինարարության տարբեր բնագավառներում, ակտիվ մասնակցելու հասարակական ու պետական գործունեությանը, պատրաստ՝ անձնվիրաբար պաշտպանելու սոցիալիստական հայրենիքը և բազմապատկելու նրա նյութական ու հոգևոր հարստությունները, պահելու և պահպանելու բնությունը: ՍՍՀՄ-ում ժողովրդական կրթության վեհ նպատակն է՝ ապահովել սովետական մարդու ժողովրդական կրթության վեհ նպատակն է՝ ապահովել սովետական մարդու հոգևոր և մտավոր պահանջմունքների զարգացումն ու բավարարումը: Ժողովրդական կրթության վերաբերյալ ընդունված օրենքը օրենսդրորեն վավերացնում է ժողովրդական կրթության համակարգի բոլոր օղակների հիմնական սկզբունքները, գիտականորեն ընդհանրացնում աճող սերնդի կոմունիստական դաստիարակության լենինյան գաղափարների կենսագործման ապարեզում կուտակված հարուստ փորձը, բավական ամուր հիմքերի վրա է դնում հանրապետության ուսումնա-դաստիարակչական բոլոր հաստատությունների գործունեությունը:

Օրենսդրության մեջ վավերագրված են այնպիսի կարևոր սկզբունքներ, ինչպես՝ ուսուցման և կոմունիստական դաստիարակության միասնությունը, դպրոցի, ընտանիքի և հասարակայնության համագործակցությունը երեխաների ու երիտասարդության դաստիարակության մարզում, աճող սերնդի ուսուցման ու դաստիարակության կապը կյանքի, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ, կրթության գիտական բնույթը, դրա մշտական կատարելագործումը՝ գիտության, տեխնիկայի, կուլտուրայի նորագույն նվա-

քոտությամբ, նվիրումով է կատարում կրթողի, դաստիարակողի իր դժվարին ու պատասխանատու դերը, պայմանավորված է յուրաքանչյուր դասի և ողջ ուսումնական պրոցեսի հաջողությունը։ Այսօր ուսումնական պրոցեսի միջոցները միայն կավիճն ու ջնջոցը չեն, այլև գիտատեխնիկական այն նորույթները, որ տեղադրվել են ժամանակակից դպրոցի կաբինետներում, լաբորատորիաներում, արհեստանոցներում։

Հիշենք մեծանուն մանկավարժ Կ. Դ. Ուշինսկու պատգամը. «...ուսուցիչն ապրում է այնքան ժամանակ, քանի դեռ սովորում է։ Հենց որ դադարեց սովորելուց, նրա մեջ մեռնում է ուսուցիչը»։

Արդ, ուսումնական հաստատությունների համար անչափ կարևոր է սովորողների, ուսուցչության, դասախոսական կազմի գաղափարական պատշաճ դաստիարակությունը։ Անհրաժեշտ է հետևողականորեն ձևավորել սովորողների մարքս-լենինյան աշխարհայացքը, նրանց սովորեցնել հասարակական կյանքի բոլոր երևույթների նկատմամբ դրսևորել դասակարգային, կուսակցական մոտեցում։ «Մեր խնդիրն է,— ասում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Բրեժնևը,— պայքարել յուրաքանչյուր երիտասարդի համար, նրա համոզմունքների համար, կյանքում նրա ակտիվ դիրքորոշման համար»։

ԱՌԱՆՑ ՎԱՐԱՆԵԼՈՒ ԿԱՐԵԼԻ Է ՀԱՍՏԱՏԵԼ, որ սոցիալիստական հասարակարգի անհատը ռեալ սոցիալիզմի մեծագույն նվաճումն է։ Մարդու ամենահաղթ զենքը գիտելիքն է, որը սոցիալիստական հասարակարգում դադարեց լինել ընտրյալների մենաշնորհը, դարձավ ողջ հասարակության սեփականությունը։ Ցավով ենք նշում, որ XX դարի կեսերին հողագնդի բնակչության մեկ երրորդը անգրագետ է կամ կիսագրագետ։ Այսպիսին է հին աշխարհի իրականությունը, որի անբուժելի արատներն են անգրագիտությունը, սոցիալական անհավասարությունը։

Սովետական ժողովուրդը, հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հաջողությամբ կենսագործում է ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրները, նոր հորիզոններ բացում սոցիալական առաջընթացի ճանապարհին։ Ընթացիկ հնգամյակում երկրի արտադրուժերի հուժկու վերելքը, գիտատեխնիկական նորամուծությունները որակական տեղաշարժեր հարուցեցին զարգացած սոցիալիստական հասարակարգի հոգևոր կյանքում, հարստացրին անձնավորության ներաշխարհը իրականության ակտիվ ընկալման կարողություններով։ Անհատական գործոնը սոցիալական առաջընթացի պրոցեսում երբեք այնքան շեշտված հանդես չի եկել, որքան կոմունիստական հասարակարգի կառուցման արդի փուլում։ Արդեն ձևավորվում է ներդաշնակորեն զարգացած անհատը, մեր կուսակցության սոցիալական ծրագրի իդեալը, առաջավոր մարդկության լավագույն բաղձանքների մարմնացումը։

Կրթությունը, որպես հասարակական երևույթ, ակտիվ դեր է խաղում մարդկային այն միջավայրի ստեղծման գործում, որտեղ մարդու զարգացումն իբրև անհատ կարող է առավել արդյունավետ ընթանալ։ Կրթության դերը զարգացած սոցիալիստական հասարակարգում անընդհատ աճում է, մանավանդ գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, երբ կադրերի պատրաստման գործի նկատմամբ եղած բարձր պահանջները պետական քաղաքականության իրական ելքն են, որոնք ամրակայվում են ընդհանուր միջնակարգ կրթության հաստատմամբ։

Կրթության սոցիալական ֆունկցիաները լայն են ու բազմանշանակ։ Կրթական կողմնորոշումը սոցիալական ակտիվության չափանիշ է, անհատի բարոյական դաստիարակության, նրա՝ արդի կուլտուրային հաղորդակցվելու էական հատկանիշ։ Դժվար է գտնել մարդկային գործունեության որևէ ոլորտ, որը հեռու լինի կրթությունից, կամ չգտնվի վերջինիս արգասաբեր ներգործության ոլորտում։ Կրթության հանդեպ ցուցաբերած իր որոշմամբ՝ մարդը հետապնդում է հեռավոր նպատակներ, կանխորոշելով ապագան, ապրելակերպը։ Ցանկացած բնագավառում կայացվող որոշումն առնչվում է օբյեկտիվ պահանջներն անձնապես իմաստավորելու հետ։ «Պետքականի» մասին որքան



շատ է անհատի ինֆորմացիան, որքան խոր է գիտակցում ընդունած որոշման կարևորությունը, այնքան կայուն է նրա կատարած ընտրությունը։

Հանրակրթական միջնակարգ դպրոցում առաջադիմության գրավականը պայմանավորվում է սովորողի՝ դպրոցի և ուսման հանդեպ ունեցած հաճախ փոփոխվող վերաբերմունքով։ Հայտնի է, որ երեխան դպրոց է ընդունվում յոթ տարեկան հասակում և այն ավարտում է տասնյոթ դարձած։ Այդ տարիների ընթացքում նրա անհատականությունն էապես փոփոխվում է։ Փոխվում են շրջապատի նկատմամբ նրա վերաբերմունքի համակարգը, շփման բնույթը, ապրելակերպը, համապատասխանաբար նաև նրա մղումների, հակումների ոլորտը։ Սակայն սովորողի հոգեկանում տեղի ունեցած որակական տեղաշարժերն անհաղորդ են մնում դպրոցին, ավելի ճիշտ՝ անհրաժեշտ արձագանք չեն գտնում դպրության՝ ստեղծված համակարգում։ Ճիշտ է, միջնակարգ դպրոցում ուսումնական պրոցեսի կազմակերպման կայուն ձևը դասն է։ Սակայն դա չի նշանակում, որ դասը, դրա կառուցվածքը չեն փոփոխվում։ Դեռևս դպրոցական ուսուցման ողջ ընթացքում պահպանվում է աշակերտին անակնկալ հարցումների ձևը, որը դասարանում ստեղծում է հոգեբանական լարվածություն։ Չէ՞, որ նախկինում եղել են տրված դասի հարցման ավելի արդյունավետ ձևեր, երբ աշակերտը պարտավոր էր արտահայտել իր գիտցածը անցած ողջ նյութի վերաբերյալ։ Նման եղանակը բացառում է պատահականությունը, սովորողների գիտակցության մեջ արմատավորում դասը մշտապես պատրաստելու անհրաժեշտություն։ Այս դեպքում աշակերտը հայացքը չի թաքցնի ուսուցչից, վստահ կնայի նրա աչքերին։

Կյանքը հրամայաբար թելադրում է միջնակարգ դպրոցի բարձր դասարաններում դասավանդման ձևերը մոտեցնել բուհականին— դաս-դասախոսություն, դաս-սեմինար, դաս-պրակտիկում։ Չէ՞ որ դպրոցից հետո, բուհում թե արտադրության մեջ, սովորողն առնչվելու է ուսուցման նման ձևերի, իսկ ինքը չգիտե դասախոսություններ գրի առնել, նախապատրաստվել և հանդես գալ սեմինար պարապմունքների ժամանակ։ Այս արատը բուհում դժվար են հաղթահարում առաջին կուրսեցիները։ Հարկ է նկատել և այն հանգամանքը, որ դեռահասի անընդհատ հարստացող ու ընդլայնվող հոգևոր աշխարհի համար նեղ են դպրոցական ուսուցման շրջանակները, որտեղ դանդաղ են ներմուծվում կյանքի ու գիտության նորույթները։ Նման պայմաններում հնարավոր է, որ պատանին իր ներքին էությամբ հեռանա դպրոցից։ Դեռահասի մոտ առաջանում են ինքնահաստատման մղումներ, որոնք ոչ միշտ են ընթանում առողջ հունով։

Այժմ մանկավարժական գիտության առջև խնդիր է դրված՝ պարբերացնել ուսուցման ու շփման ձևերը դպրոցում, դասի յուրացման պրոցեսում բացահայտել սովորողների ինքնադրսևորման աստիճանը, որոնց հետաքրքրությունների շառավիղը դուրս է եկել դպրոցական կյանքի շրջանից։

Տասնամյա դպրոցը չի կարող կառչել տարրականի ավանդույթներին։ Այն մնում է դեռահասների դպրության դարբնոցը՝ իրեն հատուկ սկզբունքներով ու առանձնահատկություններով։ Այստեղ նյութի մանրակրկիտ բացատրությունից աստիճանաբար պետք է աշակերտներին վարժեցնել ինքնուրույն մտածողության, զարգացնել նրանց վերլուծական միտքը, որպեսզի ամբարված գիտելիքներն ակտիվ կիրառվեն կյանքում, պրակտիկայում։ Երրորդ հազարամյակի հեռանկարը ենթադրում է գիտելիքների և ունակությունների արագ փոփոխում՝ նորի տիրապետման հակման զարգացմամբ։ Միջնակարգ դպրոցից սկսած պետք է այնպես դաստիարակենք մարդուն, որպեսզի նա համընթաց քայլի գիտատեխնիկական առաջընթացի հետ։ Իսկ դա հնարավոր է միայն այն դեպքում, երբ ակտիվ է ուսուցման պրոցեսը, զարգանում են սովորողների ճանաչողական, իմացաբանական հետաքրքրասիրությունները։ Ուսուցման նրման դրվածքի հաստատումը կենտրոնաձիգ ուժ է, որն իր ոլորտը կներքաշի այն բոլոր իմաստասեր դեռահասներին, որոնց ինչ-որ չափով դպրոցը չէր բավարարում և «ինչու»-ների պատասխանը որոնում էին ինքնահաստատման ուղիներում։

Արդ, դպրոցը չափից ավելի է հագեցված ծրագրային նյութով, որը շարունակում է համալրվել նորանոր ինֆորմացիայով: Սակայն այդ ծավալը, ի վերջո, անսահման չէ, և սկսվում է այն բեռնաթափելու պրոցեսը: Իհարկե, միշտ էլ կարելի է ինչ-որ բանից ձերբազատվել, բայց դա ելքը չէ: Մակընթացությունը և տեղատվությունը ինֆորմացիայի ընտրության պրոցեսում, թերևս, անհեռանկարային են, եթե այն դիտում ենք արագացող գիտատեխնիկական առաջընթացի բարձունքից: Քանի որ ավելի շատ ինֆորմացիա պետք է ամբարել, հետևապես և դժվար է այն խնդիրը, թե ինչից պետք է հրաժարվել: Այս լուրջ խնդիրն է, որն իր ողջ բարդությամբ ծառացել է դպրոցի, ուսումնական բոլոր հաստատությունների առջև: Սակայն առաջավոր գիտնականների պրպտող միտքը նշված պրոբլեմի լուծման միջոցներ է գտնում: Օրինակ, անհրաժեշտ է, ոչ թե նվազեցնել, պակասեցնել ծրագրով նախատեսված գրականությունը, այլ, պատկերավոր ասած՝ զբաղվել ինֆորմացիայի փոխներարկմամբ— ավելացնել տարբեր բնույթի տեղեկագրերի հրապարակումը: Հայտնի է, որ ծրագրավորված նյութի զգալի մասը հարկավոր է ուղղակի սովորել, մտապահել: Իսկ դրա համար պետք է բավական ժամանակ: Ահա այդ ժամանակը կարելի է շահել, ըմբռնված տեղեկությունները ի մի բերելով տեղեկագրերում, որոնցից սովորողը կարող է բացահայտ օգտվել անգամ քննությունների ժամանակ: Մարդն օգտագործման համար մտապահում է ոչ բոլոր տվյալները: Զեկուցման, դասախոսության համար անհրաժեշտ աղբյուրներից արվում են որոշ գրառումներ: Ի դեպ, դպրոցում նման գրառումները վնասակար են համարվում: Անհրաժեշտ է դպրոցի համար ստեղծել տեղեկագրային հրապարակումներ և որքան շատ, այնքան լավ: Պետք է խրախուսել դասի ժամանակ տեղեկագրերի օգտագործումը սովորողների կողմից. հասնել այն բանին, որ աշակերտները ձեռք բերեն համապատասխան աղբյուրներ որոնելու հմտություն:

Շատ առումներով դպրոցը կանխորոշում է իր սաների ճակատագիրը: Այդ տարիներին ծնունդ առած բարոյական ու մտավոր գործունեության ոճը հետագայում կատարելագործվում է և ոչ թե վերստին ստեղծվում: Երեխան բազմապիսի հարաբերությունների մեջ է մտնում իրեն շրջապատող իրականության հետ: Մարդիկ ոչ մի տարիքում այնքան արագ չեն փոխվում, որքան մատաղ հասակում: Դպրոցականի օրը բովանդակում է բազմաթիվ հայտնագործություններ, անջնջելի տպավորություններ... Դասերից բացի աշակերտներին պետք է ազատ ժամանակ, երբ մնալով մենակ՝ գրքի կամ ինքն իր հետ, նա կարող է խորհել իրեն հուզող հարցերի, դեպքերի ու իրադարձությունների շուրջ: Այդպիսի ժամերին են գրվում առաջին բանաստեղծությունները, գծագրվում առաջին մոդելը, ծնվում են մտքեր, որոնց ապագան դժվար է գուշակել: Կրակը մարում է ո՛չ միայն վառելիքի պակասից, այլև առատությունից: Կլանելով սովորողի ժամանակը՝ խոչընդոտում ենք նրա անհատականության զարգացումը:

Շատ կարևոր է երեխաների դաստիարակչական փոխազդեցությունը միմյանց վրա: Ինչպես էլեմենտների միացումը հաճախ ձեռք է բերում հատկություններ, որոնք հատկանշական են դրանցից յուրաքանչյուրին առանձին վերցրած, այդպես էլ երեխաները՝ համակված ընդհանուր հրապույրով, նորովի են դրսևորվում: Երկչոտը դառնում է վստահ, անտարբերը՝ կարեկցող, թափթփվածը՝ հավաք, իներտը՝ ակտիվ: Այդ պարագայում անձնավորության որոշ գծեր ո՛չ միայն բացահայտվում են, այլև ի հայտ են գալիս առաջին անգամ: Ծույլը հրապուրվածների միջավայրում կերպարանափոխվում է, նրա հոգում արթնանում է ինքնահաղթահարման մղումը: Եթե երեխան իր հակումներով ու հետաքրքրասիրություններով անհաղորդ է դպրոցի պահանջներին, այստեղ ներդաշնակության մասին խոսք չի կարող լինել: Արդյոք երբեմն պայքարը հանուն առաջադիմության չե՞նք փոխարինում ետ մնացողների դեմ կռվելով: Եթե առաջին դեպքում ետ մնացողն ուսուցչի դաշնակիցն է, ապա երկրորդի ժամանակ վերածվում է հակառակորդի, որը, չընդունելով բարոյախոսական խրատները և տհաճ հանդիմանությունները, լքում է դպրոցը: Տակավին չօգտագործելով համոզման հնարավորությունները՝ շտապում ենք դատապար-



տել: Ինչպիսի՞ համբերությամբ պետք է օժտված լինի երեխան, դիմակայելու համար իրենց մանկությունը մոռացության տված մեծերի հոգեբանական հարձակումը: Երբ մեկ տարեկայից չառաջադիմելու համար երեխան մնում է նույն դասարանում և հարկադրված վերստին լսում է այն, ինչ իրեն հայտնի է, բթանում է նրա իմաստասիրությունը, կորչում սովորելու ցանկությունը: Ետ մնալով իր դասընկերներից՝ նա ոչ միշտ, կամ էլ դժվարությամբ է իր տեղը գտնում նոր կոլեկտիվում: Գերաճածներից շատերը մինչև տասնվեց տարեկան հասակը նստելով միջին դասարաններում, թողնում են դպրոցը՝ մնալով թերուս: Դրա համար հույժ անհրաժեշտ են շուտափույթ մանկավարժական օգնություն, դպրոցի ու ընտանիքի անխախտ դաշինք: Մեզ պետք է հուզի ո՛չ միայն այն, թե ինչպիսի՛ն են աշակերտների գիտելիքները, այլև՝ որո՛նք են նրա առաջադիմության դրդապատճառները: Անշուշտ, ամենաէականը միայն թվանշաններն ու քննությունները չեն, կարևորը այդ ամենը մի որոշակի նպատակի ծառայեցնելն է:

Ով նպատակ ունի, ում շահախնդրությունները լուրջ են ու խոր, երբեք ամեն պատահած գիրք չի կարդա: Նմանները գրականության մեջ փնտրում են իրենց հուզող հարցերի պատասխանը: Զարգացած է նրանց ճաշակը, տեսնում են լավը, չեն հրապուրվում մոդայիկ գրքերով... Կան և այնպիսիք, որ կարդում են ժամանակն սպանելու համար: Այսպիսով, պասիվ ուշադրությունը, Հեգելի արտահայտությամբ՝ վերածվում է մտքի ծուլության: Անբանությունը խանգարում է հետաքրքրասիրությանը վերաճելու իմաստասիրության: Աշակերտներն ստանում են պատասխաններ՝ դեռևս անկարող հարցեր տալու: Պայքարում թրծված աշխարհայացքը նրանց տրվել է պատրաստի, որպես թևավոր մտքեր, նրանք չեն խորացել դրա էության մեջ: Թերթելով բազում ոչ կենսական գրքեր, նրանք հոգեպես մնացել են աղքատ:

Հանրահայտ է, որ շատ չափանիշների մեկնակետից դպրոցի դեմքը որոշվում է ղեկավարի, ինչպես և ուսուցչական կոլեկտիվի մակարդակով, որի ձևավորմամբ դիրեկտորը միշտ չի զբաղվում: Նա ուսուցիչներ չի ընտրում, այլ ընդունում է նրանց, ովքեր ներկայանում են՝ նշանակման հրամանով: Հայտնի է, որ մանկավարժական ուսումնական հաստատությունները հաճախ ընդունվում են միջակ ընդունակությունների տեր և մանկավարժությունից հեռու պատանիներ ու աղջիկներ: Նման երևույթներից կարելի է խուսափել՝ վճռականորեն բարելավելով երիտասարդության ընտրությունը մանկավարժական ուսումնական հաստատությունները: Ամեն ոք չի կարող և չպետք է մանկավարժ լինի, և մատաղ սերնդի կրթությամբ ու դաստիարակությամբ զբաղվող մասնագետների ընտրությունը, թերևս, պետք է կատարվի դպրոցական նստարանից, դպրոցի օգնությամբ ու երաշխավորությամբ: Որքան արագ իրականացվի այդ խնդիրը, այնքան շուտ դպրոցը կազատվի միջակության տհաճ լծից:

Ուսուցչի դերի, այդ մասնագիտության հեղինակության հետագա բարձրացման հարցն այսօր ևս հրատապ է: Նրանք, որոնց հաջող աշխատանքով է պայմանավորվում սերունդների մտավոր ու բարոյական զարգացումը, պետք է ունենան կյանքի, աշխատանքի, հանգստի առավել բավարար պայմաններ, իրենց հույժ պատասխանատու խնդիրը լուծելու ձիրք և ունակություններ: Ուսուցիչներն այն սյուներն են, որոնց վրա բարձրանում է ողջ մատաղ սերնդի, հետևապես և մեր հասարակության ապագան: Ուրեմն հոգանք, որ ամուր, հաստատուն լինեն այդ սյուները:

# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԸՆԴԵՐՔԻ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆԸ

**Է. Խ. ՂՈՒԼՅԱՆ**
ՀՍՍՀ Մինիստրների սովետի երկրաբանական վարչության պետ,
երկրաբանական-հանքաբանական գիտությունների թեկնածու

Ընդերքի պաշարները համաժողովրդական հարստության կարևոր բաղկացուցիչ մասերից են և անգնահատելի դեր ունեն մեր երկրի տնտեսական ու ռազմական հզորության ամրապնդման գործում։ Վ. Ի. Լենինը չափազանց կարևորում էր ընդերքի հարստությունների հայտնաբերումն ու ռացիոնալ օգտագործումը։

Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության անդուլ հոգածության շնորհիվ, համեմատաբար կարճ ժամանակամիջոցում, սովետական երկրախույզներն ուսումնասիրեցին մեր երկրի երկրաբանական կառուցվածքը, գիտականորեն մշակեցին օգտակար հանածոների հանքավայրերի տեղաբաշխման օրինաչափությունները, դրանց որոնման ու հետախուզման մեթոդները։ Եվ ապա հայտնաբերվեցին ժողովրդական տնտեսության զարգացմանն անհրաժեշտ բազում օգտակար հանածոների արդյունաբերական հսկայական պաշարներ, և այժմ ՍՍՀՄ-ն աշխարհի միակ երկիրն է, որ լիովին ապահովված է սեփական հանքա-հումքային ռեսուրսներով։

Ընդերքի երկրաբանական ուսումնասիրումը և հանքա-հումքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը միշտ էլ եղել են կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ուշադրության կենտրոնում։ Դրա փայլուն ապացույցն են ՍՍՀՄ Գերագույն սովետի իններորդ գումարման երրորդ սեսիայում հաստատված «ՍՍՀ Միության ու միութենական հանրապետությունների ընդերքի օրենսդրության հիմունքները»։ Նման օրենքի կենսագործումը, անշուշտ, համապետական նշանակության վիթխարի գործ է, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման կարևոր ազդակ։

Ընդունված օրենսդրության մեջ առանձնապես շեշտված են ընդերքի ուսումնասիրման, օգտակար հանածոների նոր հանքավայրերի հայտնաբերման, դրանց կոմպլեքսային հետազոտման, պաշարների լիակատար հաշվարկման, երկրաբանական աշխատանքների արդյունավետության բարձրացման, հանքավայրերի ռացիոնալ շահագործման հարցերը։ Շարադրված են համապատասխան գերատեսչությունների և ձեռնարկությունների իրավունքներն ու պարտականությունները։

Այս օրենքը նաև հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, սոցիալ-տնտեսական առումով չափազանց կարևոր հանքա-հումքային ռեսուրսների համակողմանի ուսումնասիրման և ռացիոնալ օգտագործման մի նոր հուժկու խթան է։

Թեև հայկական լեռնաշխարհը զանազան օգտակար հանածոների օգտագործման բնօրրաններից մեկն էր, մինչ սովետական կարգերի հաստատումը չուներ հետախուզված և շահագործման ենթակա ոչ մի հանքավայր, բացի Ղափանի, Ալավերդու, Ախթալայի հանքավայրերից, որոնք անսիստեմ ու անխնա շահագործվում էին օտարերկրյա արդյունաբերողների կողմից։



ՀԿԿ Կենտկոմը, ՀՍՍՀ կառավարությունը, կարևորելով ժողովրդական տնտեսության զարգացման գործում ընդերքի հարստությունների դերը, մշտապես հոգացել են դրանց հայտնաբերման ու ռացիոնալ շահագործման հարցերի մասին։ Համեմատաբար կարճ ժամանակամիջոցում հանրապետությունում ստեղծվեցին մասնագետ կադրերի պատրաստման ուսումնական, գիտահետազոտական հաստատություններ և արտադրական կազմակերպություններ։

Սովետական Հայաստանի երկրաբանները, Միության գիտահետազոտական հաստատությունների աջակցությամբ, ձեռնամուխ եղան հանրապետության տարածքի երկրաբանական կառուցվածքի բազմակողմանի ուսումնասիրմանը. նրանք կազմեցին երկրաբանական, տեկտոնական, մետաղաբերության, երկրաֆիզիկական, ջրաերկրաբանական տարբեր մասշտաբների քարտեզներ, գիտականորեն մշակեցին օգտակար հանածոների հանքավայրերի տեղաբաշխման օրինաչափությունները, դրանց որոնման և հետախուզման մեթոդները։ Պրպտուն ու անդուլ աշխատանքով հայտնաբերվեցին տարբեր օգտակար հանածոների բազում հանքավայրեր, հիմնավորվեց, որ կառուցվածքով բարդ և առանձնահատկություններով ուրույն հանրապետության ընդերքի հարստությունների շահագործումը մեծապես կխթանի ժողովրդական տնտեսության զարգացումը։

Այժմ հանրապետության ընդերքում հայտնաբերվել են երկաթի, պղնձի, մոլիբդենի, ալյումինիումի, ոսկու, արծաթի, կապարի, ցինկի, այդ հանքանյութերին սերտորեն կապված՝ ռենիումի, թելուրի, սելենի, կադմիումի, վանադիումի և այլ մետաղների, բենտոնիտային և դիատոմիտային կավերի, քարաղի, պեռլիտների, գիպսի, պեմզաների, հրակայուն ու կաղապարող հողերի, ապակու, ցեմենտի հումքի, ագաթների, մարմարների և բարձրորակ այլ շինանյութերի, հանքային բուժիչ ու քաղցրահամ ջրերի հանքավայրեր։ Դրանց հանքահումքային բազայի վրա ներկայումս գործում, նախագծվում ու կառուցվում են բազմաթիվ ձեռնարկություններ, հարստացուցիչ ֆաբրիկաներ և գործարաններ։

Հանրապետության ժողովրդական տնտեսության մի շարք կարևոր ճյուղերի հետագա զարգացումն ապահովելու համար, կենսական պահանջ է դառնում օգտակար հանածոների նոր հանքավայրերի հայտնաբերումն ու շահագործվող հանքավայրերի պաշարների ընդլայնումը։

Հանրապետության երկրաբանները գիտականորեն մշակեցին տասներորդ հնգամյակի երկրաբանական-որոնողական և հետախուզական աշխատանքների կոմպլեքսային ծրագիրը, որի գլխավոր նպատակն է՝ հայտնաբերել և հետախուզել ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերի հետագա զարգացումն ապահովող անհրաժեշտ զանազան օգտակար հանածոների նոր հանքավայրեր, բարձրացնել կատարվող աշխատանքների արդյունավետությունը, լայնորեն կիրառել երկրաֆիզիկական, երկրաքիմիական, կոսմիկական մեթոդները, նորագույն տեխնիկական միջոցները՝ ընդերքի խորքերն ուսումնասիրելու համար։

Ընդունված օրենսդրությունն արծարծում է բազմաթիվ էական հարցեր։ Սույն հոդվածում կփորձենք համառոտակի նշել հանրապետության ընդերքի երկրաբանական ուսումնասիրման գլխավոր խնդիրները՝ կապված տասներորդ հնգամյակում օգտակար հանածոների ռացիոնալ օգտագործման հետ։

Հաշվի առնելով երկաթի դերը գիտատեխնիկական հեղափոխության արդի փուլում, երկրաբանները մշակեցին և հիմնավորեցին այն թեզը, որ Սովետական Հայաստանի ընդերքում հնարավոր է հայտնաբերել երկաթահանքի արդյունաբերական խոշոր կուտակումներ և ձեռնամուխ եղան երկրաբանական-որոնողական ու հետախուզական աշխատանքներին։ Այսօր, մեր հանրապետության տարածքի ընդերքում հայտնաբերվել և հետախուզվել են երկաթահանքի արդյունաբերական երկու հանքավայրեր, մոտ 300 մլն տոննա հետախուզված պաշարներով։ Գիտականորեն հիմնավորված է, որ երկաթահանքի պրոգնոզային պաշարները կազմում են շուրջ 4—5 մլրդ տոննա։ Այսպիսով, ապացուցվեց, որ Սովետական Հայաստանը մեր երկրի հեռանկարային երկաթաբեր

խթանելու նպատակով անհրաժեշտ է հայտնաբերել և հետախուզել կալիի արդյունաբերական հանքավայրեր: Այս դժվարին խնդիրը լուծելու համար հարկ է, մի կողմից ուժեղացնել երկրաբանական-որոնողական նպատակասլաց աշխատանքները, մյուս կողմից, հանգամանալի ուսումնասիրել արգնաճողով ու երկարով հարուստ Ուրցի ապարները. Կոմպլեքսային տեխնոլոգիական աշխատանքներ կատարելիս հնարավոր կլինի այդ ապարներից առանձնացնել երկաթ պարունակող միներալները, իսկ մնացորդն օգտագործել որպես կալիական հանքանյութ: Այս հարցի լուծումն առաջիկայում կդառնա առաջնահերթ:

ՍՍՀՄ Գերագույն սովետի հաստատած օրենսդրության մեջ հատուկ տեղ է տրված ընդերքի հարստությունների կոմպլեքսային ուսումնասիրմանը, արդյունավետ ու խնայողաբար օգտագործմանը:

Հանրապետության համապատասխան գերատեսչությունները, գիտահետազոտական հաստատությունները և արտադրական ձեռնարկությունները պետք է մշակեն ու արտադրության մեջ ներդնեն հանքանյութերից արժեքավոր բոլոր մետաղների կորզման նոր, ավելի արդյունավետ մեթոդներ և հանքանյութերի կոմպլեքսային շահագործման գիտականորեն հիմնավորված նոր եղանակներ, որոնք հնարավորություն կընձեռեն ընդերքի հարստությունները շահագործել արդի պահանջներին համապատասխան:

Թե որքան կարևոր է օգտակար հանածոների կոմպլեքսային ուսումնասիրումը և շահագործումը, կարելի է ցույց տալ բենտոնիտային կավերի օրինակով: Վերջիններս որպես բնական զտիչներ, կապակցող նյութեր, լայնորեն օգտագործվում են ձեթ-օճառի, նավթի, սև մետաղագործության, անասունների խտացրած կերի և բազմաթիվ այլ արտադրություններում: Երկրաբանները հայտնաբերել և հետախուզել են այս օգտակար հանածոյի խոշոր պաշարներ, որոնց հանքա-հումքային բազայի վրա գործում է և հետագայում կընդարձակվի Իջևանի «Բենտոնիտ» կոմբինատը. հանքավայրի շրջակայքում մոտ 20—25 մլն տոննա բենտոնիտային կավեր ցածրորակ էին և դիտվում էին որպես թափոններ: Վերջին տարիներս բազմակողմանիորեն ուսումնասիրվեցին բենտոնիտային ցածրորակ կավերի իրացման ուղիները: Պարզվեց, որ դրանք կարելի է հաջողությամբ օգտագործել որպես կաղապարող հողեր: Հետախուզվեցին բենտոնիտային կավերի ավելի քան 70 մլն տոննա պաշարներ, որոնք Իջևանի կոմբինատին հնարավորություն կընձեռեն գործել ավելի քան 50 տարի, ժողովրդական տնտեսությանը տարեկան տալով մոտ 16 մլն ռուբլու շահույթ: Այսպիսով, բենտոնիտային կավերի կոմպլեքսային շահագործումը կբարձրացնի ո՛չ միայն կոմբինատի շահութաբերությունը, այլև կապահովի շրջակա միջավայրի մաքրությունը, մի հանգամանք, որի հրատապությունը բազմիցս շեշտվել է կուսակցության ու կառավարության որոշումներում:

Չնայած վերջին տարիներին համապատասխան գերատեսչությունները և գիտահետազոտական կազմակերպությունները որոշակի աշխատանքներ են կատարել օգտակար հանածոները ռացիոնալ կոմպլեքսային եղանակով շահագործելու համար, այնուամենայնիվ, դրանք տակավին կատարյալ չեն: Առայժմ պղինձ-մոլիբդենային հանքանյութերից չի կորզվում պղնձի շուրջ 25, մոլիբդենի՝ 18—26 տոկոսը, իսկ բազմամետաղային հանքանյութերից՝ պղնձի շուրջ 56, կապարի՝ 55, ցինկի՝ 48 տոկոսը: Անթույլատրելի ցածր է ցրված ու հազվագյուտ մի շարք արժեքավոր տարրերի կորզման տոկոսը:

Բացի այդ, երբեմն սխալ պլանավորման հետևանքով, հանքանյութերի մի զգալի մասը արհեստականորեն դառնում է թափոն, այն դեպքում, երբ այլ հանքավայրերում դրանք հաջողությամբ շահագործվում են:

Այսպիսով, մի կողմից ժողովրդական տնտեսությունը հսկայական գումարներ է հատկացնում նոր հանքավայրերի հայտնաբերման ու հետախուզման համար, մյուս կողմից օգտակար հանածոների զգալի պաշարներ, տեխնոլոգիական և ռացիոնալ շահագործման կատարյալ մեթոդների բացակայության հետևանքով, դառնում են թափոններ:

Տարեցտարի ընդլայնվում են մարմարների օգտագործման շրջանակները: Հանրապետությունում հայտնաբերվել և հետախուզվել են բազմերանգ մարմարների, օնիքսանման մարմարների, կոնգլոմերատների մի շարք հանքավայրեր: Սակայն, տարիներ շարունակ դրանք շահագործվում են անարդյունավետ մեթոդներով ու եղանակներով: Գրեթե բոլոր հանքավայրերում օգտագործվում են պայթուցիկ նյութեր, որի հետևանքով նվազում են անհրաժեշտ օգտակար հանածոների խոշոր զանգվածների որակական ցուցանիշները:

Շինարարության մեջ լայն կիրառում է ստացել գաջը, որն արդյունահանում են միայն Ջրվեժի գիպսաբեր կավերի հանքավայրում: Գաջի արդյունաբերական պաշարներն այստեղ սահմանափակ են, չնայած երկար տարիներ հանքավայրը շահագործվում է առանց միասնական մանրակրկիտ մշակված նախագծի: Այժմ հանքավայրում շահագործվում են գիպսով համեմատաբար հարուստ շերտերը կամ տեղամասերը: Հաշվի առնելով հանրապետության ընդերքում գիպսի բնական ռեսուրսների սակավությունը, համապատասխան գերատեսչությունները գիտահետազոտական կազմակերպությունների հետ պետք է մշակեն գաջի ստացման նոր եղանակեր, գործի դնել համեմատաբար ցածրորակ գիպսաբեր կավերի ռեսուրսները, ինչպես և կտրուկ միջոցներ ձեռնարկեն գաջը խնայողաբար և ռացիոնալ օգտագործելու համար:

Պեռլիտները հանրապետության ընդերքի հարստություններից են: Հանրապետության երկրաբանները բազմակողմանիորեն զբաղվեցին այդ հանածոյի հանքավայրերով, համեմատաբար կարճ ժամանակամիջոցում հայտնաբերվեցին և հետախուզվեցին պեռլիտների խոշոր պաշարներ, որոնց բազայի վրա գործում են Արագածի կոմբինատը և լեռնահանքային մի շարք ձեռնարկություններ: Այժմ այս օգտակար հանածոն մեծ քանակությամբ օգտագործվում է շինարարության մեջ, հիմնականում թեթև բետոններ և կոնստրուկցիաներ պատրաստելիս: Մեր կարծիքով, պեռլիտների փոխարեն նպատակահարմար է օգտագործել հրաբխային խարամները, որոնց հետախուզված և հատկապես հեռանկարային պաշարները հսկայական են:

Հայտնի է, որ Հայաստանը սակավաջուր է: Հաշվի առնելով, որ ժողովրդական տնտեսության հետագա զարգացումը որոշակիորեն պայմանավորված է ջրային ռեսուրսներով, երկրաբանները մանրամասն ուսումնասիրեցին հանրապետության տարածքի ջրաերկրաբանական առանձնահատկությունները, հաշվարկեցին ստորերկրյա քաղցրահամ ջրերի հեռանկարային պաշարները: Հայտնաբերեցին մի շարք արտեզյան ջրավազաններ, ստորերկրյա ջրային հոսքեր, որոնց հետախուզված, հաշվարկված ու հաստատված շահագործողական պաշարները ստորերկրյա քաղցրահամ ջրերի հեռանկարային ռեսուրսների շուրջ 50 տոկոսն են:

Հանրապետությունը հարուստ է հանքային բուժիչ ջրով: Արդեն հետախուզվել և հաշվարկվել են 7 հանքավայրեր, որոնց բազայի վրա ստեղծվել են հանքային ջրերի գործարաններ ու կուրորտային հիմնարկություններ: Առաջիկայում կկառուցվեն Բժնիի և Կիրովականի հանքային ջրերի գործարանները: Հանրապետությունը ստորերկրյա քաղցրահամ և հանքային ջրերի հետախուզված պաշարներով Միության մեջ գրավում է առաջին տեղերից մեկը:

Տասներորդ հնգամյակում մեր երկրաբանները պետք է լուծեն բարդ ու կենսական մի շարք հարցեր: Կոմպլեքսային մեթոդներով կուսումնասիրվեն ստորերկրյա քաղցրահամ ջրերի կուտակումները՝ բարելավելու Երևանի, Լենինականի, Կիրովականի, որոշ շրջկենտրոնների, արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների և բնակավայրերի ջրամատակարարումը: Հողերի մելիորատիվ միջոցառումների մշակման համար պետք է կազմվի ինժեներա-ջրաերկրաբանական քարտեզ 10—11 հազար քառ. կմ տարածքի համար:

Հարկ է ուսումնասիրել հանրապետության տարածքում տարեցտարի աճող սողանքները, ձեռնարկել հակասողանքային միջոցներ: Կհայտնաբերվեն տաք ջրերի և թերմերի հեռանկարային տեղամասեր:

Ընթացիկ հնգամյակի տարիներին Հայաստանում համապատասխան կազմակերպությունները և ձեռնարկությունները որոշակի աշխատանք են տարել ստորերկրյա քաղցրահամ և հանքային ջրերի պաշարների արդյունավետ օգտագործման համար: Այնուամենայնիվ, ընդերքի այդ անփոխարինելի հա-

րըստությունները շահագործվում են ոչ խնայողաբար, հսկայական կորուստներով: Հաշվարկների համաձայն, ստորերկրյա քաղցրահամ ջրերի տարեկան կորուստները կազմում են ավելի քան 432 միլիոն խոր. մետր, հանքային ջրերինը՝ 310 հազար խոր. մետր: Անթույլատրելի կորուստները մեծ են գրեթե բոլոր արտեզյան ջրավազաններում, շահագործվող աղբյուրներում, հատկապես Արարատյան դաշտի, Նալբանդի, Լենինականի արտեզյան ջրավազաններում և Բժնիի հանքային ջրերի հանքավայրերում: Նման վիճակը պետք է լրջորեն մտահոգի համապատասխան կազմակերպություններին:

Հաշվի առնելով քաղցրահամ և հանքային ջրերի էական դերը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա զարգացման գործում և ընդունված օրենքի պահանջները, մեր կարծիքով, անհրաժեշտ է մյուս օգտակար հանածոների (նավթի, գազի, մետաղների և այլն) օրինակով, ստեղծել միասնական պետական կազմակերպություն, որը կապահովի ընդերքի այս կարևոր հարստությունների ռացիոնալ շահագործումը, կեղտաղերծումը և դրանց պաշարների վերականգնումը:

Ինչ խոսք, անհրաժեշտ է շարունակել երկրաբանական նպատակասլաց որոնողական աշխատանքները՝ հայտնաբերելու հանքային ջրերի նոր հանքավայրեր, հատկապես հանրապետության գեղատեսիլ շրջաններում:

Բնական հարստությունների կոմպլեքսային և ռացիոնալ օգտագործման հարցերը պահանջում են գիտական մոտեցում:

Ներկայումս բնական հարստությունների օգտագործումը տնօրինում են տարբեր գերատեսչություններ, հաճախ հարցերը լուծելով իրենց նեղ շահերի դիրքից: Ստեղծվում են անհիմն բարդություններ, դժվարություններ—տուժում է ժողովրդական տնտեսությունը: Բնական հարստություններն արդյունավետ օգտագործելու, ներգերատեսչական չհիմնավորված շահագրգռվածությունը վերացնելու համար, մեր կարծիքով, պետք է վերանայել ժողովրդական տնտեսության կառավարման որոշ ճյուղերի կառուցվածքային ձևերը: Թերևս նպատակահարմար է ստեղծել բնական հարստությունների շահագործման մեկ միասնական պետական օրգան, որը, ելնելով ժողովրդական տնտեսության հետագա զարգացման պահանջներից, ժամանակին մշակի բնական հարստությունների կոմպլեքսային օգտագործման տեխնիկա-տնտեսական մեկ ընդհանուր քաղաքականություն: Վերջինս հնարավորություն կընձեռի ռացիոնալ օգտագործելու բնական հարստությունների պաշարները, վերացնելու գերատեսչական ոչ օգտակար շահագրգռվածությունը:

ՍՄԿԿ XXIV համագումարում ընկ. Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Ո՛չ միայն մենք, այլև հետագա սերունդները պետք է հնարավորություն ունենան օգտվելու այն բարիքներից, որը տալիս է մեր հայրենիքի սքանչելի բնությունը»: Ընդերքի հարստությունը համաժողովրդական է: Հարկավոր է այն խնայողի ծառայեցնել սովետական մարդկանց բարօրությանը:

---

# ԳԵՂԱԳԻՏԱԿԱՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊՈՒՄ

Հ. Զ. ԱՊՐԵՍՅԱՆ

«ԱՊՐԵԼԱԿԵՐՊ» ՀԱՍԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ հասարակական մտքի պատմության մեջ առաջին անգամ ձևակերպել ու հիմնավորել են Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը: Նրանք են սահմանել, որ տվյալ անհատների գործունեության որոշակի եղանակը, նրանց կենսագործունեության որոշակի տեսակը, նրանց ապրելակերպն է (Երկեր, հ. 3, էջ 19): Այդ ապրելակերպը, որ ձևավորվել ու զարգացել է մարդկության ողջ պատմության ընթացքում, որոշվում է ամենից առաջ արտադրաեղանակով և արտահայտվում մարդկային կենսագործունեության բոլոր ոլորտներում, ինչպես նաև մարդկանց պահանջմունքների բավարարման ձևերում: Սոցիալական իրականության հանգամանքների, դրա նյութական, հոգևոր ու այլ պայմանների արդյունք է ապրելակերպը կամ կենսաձևը, որն, իր հերթին, զգալի չափով ազդել է այդ հանգամանքների վրա:

Սոցիալիստական ապրելակերպը որակապես նոր, կառուցվածքով բարդ ու բազմակողմանի երևույթ է: Հակադրվելով բուրժուական ապրելակերպին, արտադրության սոցիալիստական եղանակի վրա հիմնված սոցիալիստական կենսաձևն արտացոլում է հասարակական նոր հարաբերություններ և արտահայտում սոցիալական նոր հոգեբանություն, առաջնային և հարաճուն դեր խաղալով նոր անհատի ձևավորման ու զարգացման գործում: Ահա թե ինչու կուսակցության XXIV համագումարը մեր գաղափարական աշխատանքի կարևոր խնդիրներից մեկը համարեց սոցիալիստական (սովետական) ապրելակերպի լայն ու ակտիվ պրոպագանդումը:

Սույն հոդվածում ցանկանում ենք քննության առնել սովետական ապրելակերպի գեղագիտական, մասամբ նաև բարոյական կողմերն ու մոմենտները: Սակայն կսահմանափակվենք կենցաղում, անձնական վարվելաձևում և առարկայական միջավայրում գեղագիտականի համառոտ քննությամբ:

## I

Կենցաղը մարդկանց կյանքի նյութական ու հոգևոր պայմանների ամբողջությունն է՝ նրանց հասարակական, հատկապես արտադրական գործունեությունից դուրս: Լինելով մշտապես աճող անձնական պահանջմունքների բավարարման պատմականորեն ստեղծված փոփոխուն ձև, կենցաղը սոցիալական կարգի էական մասն է և հասարակության զարգացման էական գործոնը: Կենցաղի դինամիկ կորիզն ընտանիքն է, որը պատմական զարգացման պայմանների արգասիք է, և գլխավորապես բնորոշվում է սոցիալ-տնտեսական տվյալ ֆորմացիայի բնույթով:

Օրինաչափ է, որ սոցիալիզմը ծնեց կենցաղ, որը գտնվում է ձևավորման ու զարգացման շրջանում, ինչպես և ընտանիք, որը նույնպես նոր է հատկապես իր տնտեսական-արտադրական ֆունկցիաներով, իրավական հիմքով ու բարոյականությամբ: Սոցիալիզմն զգալի չափով հաղթահարել է կենցաղի ու հասարակության, ինչպես և անձնական ու հասարակական կյանքի միջև երբեմ-

րումը ոմանք հասկանում են բավական միակողմանի ու նեղ, այն հանգեցնելով հարմարավետ բնակարանի և նյութական ապահովվածության: Անշուշտ, առանց դրանց չի կարելի պատկերացնել անձնական կյանքի գեղեցկությունը, և սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունն անշեղ բարձրացնելու նպատակով մեր կուսակցությունը ձգտում է սովետական ամեն մի ընտանիքի համար ապահովել հենց այդպիսի կյանք. այդ բնագավառում արդեն շատ բան է արված:

Անտարակույս, սերն ու բարեկամությունն ընտանիքում ո՛չ միայն բարեկեցության, այլև մարդու և մարդկային հարաբերությունների իրական գեղեցկության հիմքն ու երաշխիքն են: Առանց դրա դժվար է պատկերացնել գեղագիտականը մեր կենցաղում: Սերն այն զգացումն է, որի մեջ ավելի անմիջականորեն ու ավելի վառ են դրսևորվում մարդու բնատուր հատկությունները: Նրբազգաց, իսկական սերը միաժամանակ ունակ է հաղթահարելու ամենածանր փորձությունները: Լինելով մարդու ֆիզիոլոգիական պահանջմունքների արտահայտություն, սերը, միաժամանակ, խորապես հոգեկան, իր դրսևորմամբ միշտ բազմազան ու անհատական զգացում է, երկու անհատների (տղամարդու և կնոջ) փոխըմբռնման արդյունք և հակառակը, նրանց փոխհարգանքի ու մշտական փոխօգնության արտահայտություն: Սերը խելացի, հետևաբար նաև մարդկային գեղեցիկ կյանքի առաջնահերթ պայմանն է, բեղմնավոր գործունեության անսպառ աղբյուրը: Ակներև է, որ սերն ինքնին գեղեցիկ երևույթ է, իսկ սիրո և բարեկամության զգացումը մարդու մեջ գեղեցկի բուն արտահայտությունն է: Ահա թե ինչու, խոսելով սովետական կենցաղում գեղագիտականի մասին, հարկ է նկատի ունենալ առաջին հերթին հենց այդ գեղեցկությունը: Երկուստեք փայփայվող և խորացող սիրային հարաբերությունները վերածվում են մարդկային հարաբերությունների գեղեցկության, հարատև ուրախության ու ստեղծագործական ակտիվության աղբյուրի պահպանման մշտական հոգածության:

Նման ակտիվություն հարկ է սերմանել մանկուց, վարժեցնելով ինքնասպասարկման ու աշխատանքի, տարեցտարի բարդացնելով դրանք: Եթե ճիշտ է մարքսիստական այն դրույթը, որ աշխատանքն է ձևավորում անհատին, հետևաբար նաև՝ նրան գեղեցկացնում, պարզ չէ, մի՞թե, որ այդ ճշմարտությունն անհրաժեշտ է գիտակցության մեջ արմատավորել փոքրուց և ոչ թե վերացական խրատներով, այլ գործով: Ընտանիքի հետզհետե մեծացող կրտսերների տնային կամ կենցաղային աշխատանքը դյուրացնում է հասակավորների հոգսը, և, որ գլխավորն է, աշխատասիրության հզոր ազդակ է, գյուտարարության, արարչագործության, ստեղծագործական երևակայության զարգացման խթանիչ:

Ընտանիքն ու ընտանեկան հարաբերությունները պարփակված չեն չորս պատերի մեջ: Դեռևս դարասկզբին մարդիկ իրենց ազատ ժամանակի 70 տոկոսն անցկացնում էին հյուր գնալով, թուղթ, լոտո, նարդի խաղալով, հաճախ նաև քաղքենիական անբովանդակ խոսակցություններով: Մեր ժամանակներում վիճակն ակնբախորեն փոխվել է: Ռադիոն, հեռուստատեսությունը, տնային ընթերցանությունը և օգտակար ու բովանդակալից այլ զբաղմունքներ, անտարակույս, ընդլայնել են մարդկանց միջնորդավորված, առարկայական, սոցիալական ակտիվություն պահանջող շփումների շրջանակը: Ստեղծվել են պայմաններ, որ վեհ իդեալների մասին հասկացողությունները ձևավորվեն արդեն տանը, որ բարձրանա ընտանիքի անդամների էմոցիոնալ կուլտուրան, որ ամեն ոք հոգեպես հարստանա: Ասում են՝ «Դատարկ հոգին մեծ չարիք է»: Հարկավոր է խուսափել նման դատարկությունից և անել ամեն բան, որ կենցաղը նպաստի յուրաքանչյուրի հոգում մշակելու արժեքույթային կողմնորոշում, որը խթանի գեղեցկի ու գեղագիտականի զգացումի դաստիարակմանը:

Խոսքը կենցաղի՝ մեր ապրելակերպի մի բաղադրամասի խելացի (և ոչ թե աննպատակ ու ինքնահոսաբար) կազմակերպման մասին է: Խելացիությունը՝ կենցաղի գեղագիտության այդ կարևոր տարրը, սակայն, չի կարող պարփակվել սոսկ կենցաղի շրջանակներում: Իր բնույթով այն ձգտում է դուրս գալ հասարակական հարաբերությունների լայն ասպարեզ՝ հարստանալով դրանց սո-



ցիալական մասշտաբայնությամբ և խոր իմաստով: Դրա հիման վրա ծագում է անձնական (ընտանեկան) և հասարակական կյանքի հարաճուն ներդաշնակությունը, որը սովետական մարդկանց կյանքի էական տարրն է:

Սովետական Միությունում առավել հազվադեպ են այնպիսի մարդիկ, որոնք կարող են ասել՝ «Իմ տունը իմ ամրոցն է»: Անձնականի և հասարականի հարաճուն փոխադարձ կապը սոցիալիստական իրականության օրենքն է, որը բացահայտում է նոր բարոյականության ու սոցիալական ներդաշնակության հիմնական գծերից մեկը՝ կոլեկտիվիզմը: Սովետական ընտանիքը, զանազան մանկական հաստատությունները, բոլոր դպրոցները, աշխատավայրը, հասարակական ինստիտուտները, կուլտուրայի օջախները, սովետական պետական կարգը անհատի ձևավորման, զարգացման ու ինքնահաստատման մի միասնական սիստեմ են: Հակադրել կամ փորձել «մասնատել» դրանք «իմ»-ի, «մեր»-ի և «նրանց»-ի կամ, առավել ևս՝ «ուրիշ»-ի՝ կնշանակի հակասել սոցիալիզմի սկզբունքներին, միաժամանակ աղքատացնելով մեզնից յուրաքանչյուրի անձնական կյանքը: Այդ կհանգեցներ նաև գաղափարականի ու հոգեկանի աղքատացման, որոնցից դուրս մտածել իսկ չի կարելի սոցիալիստական մարդու գեղեցկության, կենցաղում գեղագիտականի արմատավորման վերաբերյալ նրա հոգածության մասին:

Չի կարելի ժողովներում ճառել գաղափարայնության մասին, իսկ տանն անվայելուչ անեկդոտներ պատմել: Ծիծաղելի է, երբ, ենթարկվելով «մոդային» կամ գործելով «հիմա այդպես է ընդունված» սկզբունքով, մարդիկ միաժամանակ դրսևորում են իրենց տգիտությունը, անկուլտուրականությունը: Անհամատեղելի են բարեկրթությունն աշխատանքում և կոպտությունն ու դեսպոտիզմը՝ ընտանիքում: Իհարկե, հանցանք է ապրել անաշխատ եկամուտներով, նույնիսկ չխորշելով կաշառակերությունից և միաժամանակ շաղակրատել «ազնվության» և ինչ-որ «վեհ իդեալների» մասին: Նման անհամատեղելի փաստեր կարելի է շատ վկայակոչել: Դրանց մասին անկեղծորեն ու օրինական վրդովմունքով խոսվեց ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում: Եվ միանգամայն բնական էր, որ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանի զեկուցման մեջ արված հետևություններն արժանացան հասարակայնության հավանությանը: Այժմ շատ բան է արվում մարդկանց կենցաղում ու ապրելակերպում տեղ գտած արատավոր երևույթների վերացման ասպարեզում:

## II

Վարքը արարքների մի շղթա է, կոնկրետ գործողություն, որի սկզբունքներն ու նորմերը որոշվում են բարոյականությամբ, նրա նորմերով, ինչպես նաև՝ զգալի չափով սովետական իրավունքով: Բայց այն, թե ինչպե՛ս, և ինչի՛ համար են գործադրվում այդ սկզբունքներն ու նորմերը, ինչպե՛ս և ի՛նչ է կատարում սովետական մարդը, բացահայտում է նաև որոշակի գեղագիտական կողմեր:

1964 թվականին լույս տեսավ **Վարվելակերպի էսթետիկան** հետաքրքրական գիրքը (изд. «Искусство»), որը հասարակայնությունն ընդունեց որպես մի նորույթ մեր հոգևոր կյանքում: «Այս գիրքը,— կարդում ենք նրա անոտացիայում,— վարվելակերպի գեղեցկության մասին է, հասարակական վայրերում մարդկանց տակտի և կոստյում հագնելու ձևի, պարերի ու նրբագեղության, սպորտի և արիության մասին: Սենյակի կահավորման և գեղեցկի զգացումի մասին»: Բովանդակալից և հետաքրքրական այս կոլեկտիվ աշխատությունն այն շահեկան միջոցներից է, որպիսիք վերջին տարիներս ընդլայնեցին աշխարհը գեղագիտորեն ընկալելու, ճանաչելու և յուրացնելու ոլորտը, օգնելով, մասնավորապես, կենցաղի էսթետիկայի էության ու պրոբլեմատիկայի ավելի հանգամանալի մեկնաբանմանը: Այսօր ավելի քան ակներև է, որ այդ աշխատության թեմատիկան հատկապես սովետական երիտասարդության համար նախկինի պես մնալով հրատապ, ակնհայտորեն սահմանափակ է: Միշտ չէ, որ այն համապատասխանում է սովետական ապրելակերպի այդ կա-

բեռը բաղադրամասերի՝ սոցիալիստական գեղագիտության և բարոյագիտության պահանջներին։

Ժողովածուի հոդվածների մեծ մասում մարդու վարքագիծը փաստորեն քննարկվում է զուտ անհատական պլանով, բութագրվում որպես ինչ-որ «վարքի մոդել»։ Գրքի հեղինակները չեն անդրադարձել սոցիալիստական հասարակության քաղաքացու լուրջ պարտականություններին ու պարտքին արտադրության մեջ, ընդհանրապես ստեղծագործ աշխատանքում և հասարակական գործերում, այսինքն՝ այն ոլորտներում, որոնցում մարդիկ ստեղծում են նյութական ու հոգևոր արժեքներ, միաժամանակ բացահայտվելով ստեղծագործության մեջ, ձևավորվելով ու կատարելագործվելով որպես անհատներ։ Եվ կարելի է միայն զարմանալ, որ գնահատելով ցածրորակ արտադրանքը կամ վատ կատարված աշխատանքը, որպես կանոն, խոսում են էկոնոմիկայի և տեխնիկայի, կազմակերպվածության և սահմանված պլանի չափանիշներով, մոռանալով գեղեցկության չափի, գեղագիտականի չափանիշի մասին։ Բայց չէ՞ որ բարձրորակ աշխատանքը, որի մեջ ասես մարմնավորված է նաև աշխատողի համապատասխան վարվելակերպը, իր էությամբ ևս գեղեցիկ աշխատանք է։ Կոմունիստական աշխատանքի հարվածայինը ստեղծագործող մի անհատ է՝ կատարյալ վարքագծով, որը բացահայտում է նրա արարչագործ բնավորությունը, հետևաբար նաև այն ամենը, ինչ մարդուն դարձնում է գեղեցիկ։

Վարվելակերպի էսթետիկան գրքում ամենևին մեկնաբանված չէ մարդու վարվելակերպը բնության գրկում, բնական աշխարհի հետ շփման մեջ։ Մինչդեռ գեղագիտական ու հակագեղագիտական վարվելակերպը հաճախ դրսևորվում է հենց բնության հետ շփվելիս։ Իրոք, մարդն իրեն առանձնապես ազատ է զգում բնության մեջ և ունակ է նրա հետ սիրով ու հիացմունքով կամ հակառակը, անխոհեմ, թշնամաբար վարվելու։ Կարևորը մարդու կուլտուրականությունն է, նրա զարգացած գեղագիտական զգացումներն ու ճաշակը, հետևաբար, բնության հետ անշահախնդրորեն, հիացմունքով ու խանդաղատանքով վարվելու կարողությունը։ Դիտել մեզ շրջապատող բնական աշխարհը, կարողանալ որքան կարելի է շատ ու բազմազան բաներ տեսնել այնտեղ, սքանչանալով կուսական գեղեցկությամբ,— դա և՛ վարվելակերպ է, և՛ կյանքում իր տեղի ըմբռնում։ Սոցիալիստական հասարակության ու նրա ապրելակերպի համար շատ կարևոր է, թե ինչպես է ըմբռնում իր այդ տեղը սովետական մարդը։

Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ վարվելակերպի էսթետիկան գրեթե ամբողջովին սոցիալիստական կարգի ծնունդ է։ Պրակտիկայում հետևողականորեն կիրառվող և տեսությամբ հիմնավորվող նման գեղագիտություն անցյալում չի եղել և չէր կարող լինել։ Մարդու պատմականորեն առաջացած օտարումը, անհատի ու հասարակության մեկուսացածությունը, սոցիալական իրականության շատ ոլորտներում տիրող անարխիան բացասում են վարվելակերպի էսթետիկան։ Արիստոկրատական շրջաններում պահպանվող խիստ պայմանական և նրբաճաշակ էտիկետը տոգորված է նրբաշղարշ, և այլազան երեսպաշտությամբ։ Բուրժուական հասարակության՝ «մարդը մարդուն գայլ է» չգրված օրենքը իսպառ բացառում է իրական գեղագիտությունը, ինչպես նաև, բնականաբար, բարոյագիտությունն ու մարդասիրությունը՝ բուրժուայի վարվելաձևում։ Վարվելակերպի էսթետիկան անհնար է այնտեղ, ուր պրոպագանդվում և հաճախ կենսագործվում են ռասայականության, «ազգային բացառիկության» գաղափարները, էրոտիզմը և բարոյական սանձարձակությունը։

Անշուշտ, չի կարելի ժխտել, որ բուրժուական երկրներում ևս հոգատարություն է ցուցաբերվում մարդկանց վարվելակերպի նկատմամբ, դրանում շահագրգռված են կապիտալիզմի տիրապետող ուժերը։ Սակայն, նրան անհրաժեշտ վարվելակերպը տարածվում է ռեակցիոն գաղափարական և «կուլտուրական» աշխատանքի բոլոր միջոցներով, մասնավորապես՝ բուրժուական գեղագիտության և մոդեռնիստական արվեստի օգնությամբ։ Ամեն ինչ արվում է մարդկանց մասսայաբար հիմարացնելու համար, որը բացառում է գեղագիտականի որևէ դրսևորում մարդու վարվելակերպում։



Միայն սոցիալիստական հասարակությունն է՝ իր բարոյա-քաղաքական միասնությամբ և ներդաշնակ անհատի զարգացմանը նպաստող ամեն ինչով օրինաչափորեն ստեղծում, ձևավորում և զարգացնում անհատի վարվելակերպի գեղագիտությունը։ Անշուշտ, ժառանգվում և քննադատաբար օգտագործվում է այն ողջ լավագույնը, որ կուտակվել է ժողովրդական բազմադարյան պատկերացումներով ու հասկացողություններով գեղեցկի ու բարու, մարդու պատվի ու խղճի, նրա արարքների մասին։ Բայց սոցիալիստական ապրելակերպում որակապես նոր երևույթ է վարվելաձևի էսթետիկան՝ իր աշխարհայացքային նպատակասլացությամբ, անձնական ու հասարակական կյանքի երևույթների լայն ընդգրկմամբ, կոնկրետ բովանդակությամբ և իրական ֆունկցիաներով։

Սակայն, սովետական հասարակության որոշ մասի, հատկապես նրա աճող սերնդի համար հույժ անբավարար է պարզաբանված, իսկ մեր պրոպագանդայի կողմից ավելի քիչ է բացատրված վարվելակերպի էսթետիկայի կարգավորիչ ֆունկցիան։ Բայց կարելի է ասել, որ լիովին բացահայտված է անհատի վարվելակերպի էսթետիկայի անխզելիությունը ողջ ժողովրդի գեղագիտական դաստիարակությունից։ Դաստիարակությունը վճռականորեն ազդում է մարդկանց վարվելակերպի վրա, իսկ վերջինս իր հերթին, նպաստում է դաստիարակության պրոցեսին։ Անժխտելի է դիալեկտիկական այս փոխադարձ կապը։ Դաստիարակության սիստեմը պետք է լինի խիստ նպատակասլաց, բովանդակալից և դիֆերենցված։

## III

Սխալ կլիներ պնդել, թե Սովետական Միությունում, որտեղ ապրում են հարյուրից ավելի սոցիալիստական ազգեր ու ազգություններ, կենցաղը միօրինակ է, գրեթե համահարթված։ Քաղաքի և գյուղի, մեծ ու փոքր քաղաքների, գյուղերի ու ավանների միջև եղած տարբերությունները պայմանավորում են նրանց միջև եղած էական տարբերությունները։ Բնականաբար, միևնույն մակարդակի վրա չի գտնվում մեր երկրի տարբեր շրջանների կենցաղի կազմակերպումը։ Ավելի քան ակնհայտ են այն մի քանի տարբերությունները, որոնք որոշվում են մեր ժողովրդի ազգային առանձնահատկություններով։ Այդ ամենը դրսևորվում է նրանց ապրելակերպում։ Գեղագիտական տեսությունն ու պրակտիկան, անշուշտ, ուղղակի առնչություն ունեն այդ ամենի հետ։ Բայց, քանի որ սույն հոդվածում խոսվում է կենցաղի էսթետիկայի մասին, անհրաժեշտ է դրանից առանձնացնել այսպես կոչված առարկայական աշխարհը, առանց որի հնարավոր չէ ո՛չ մի բարեկարգում և դրա գեղագիտություն։

Նման առարկայական (իրեղեն) միջավայրի կազմակերպումը, ձևավորումը և մշտական կատարելագործումն զգալի չափով պայմանավորված են ոչ միայն նյութական հնարավորություններով, այլև հոգևոր կուլտուրայի հարըստությամբ, սովետական մարդկանց գեղագիտական զգացմունքների ու ճաշակի մակարդակով։ Առարկայական միջավայր ասելով՝ հասկանում ենք բնակարանը ու դրա ներքին կառուցվածքը (կահավորությունը)։ Մենք գիտակցաբար անտեսում ենք տների բնույթն ու որակը, դրանց ճարտարապետական ձևավորումը և անսամբլները, դրանց բնական միջավայրը, որպիսիք բնակիչներից անկախ գրեթե ամբողջովին որոշում են համապատասխան կազմակերպությունները։ Ցանկանում ենք անդրադառնալ միայն այն իրեղեն միջավայրին, որ իր համար կազմակերպում և ձևավորում է սովետական ամեն մի ընտանիք, քանի որ համոզված ենք, որ առարկայական միջավայրի նկատմամբ է հատկապես բազմազանորեն դրսևորվում անհատական և խիստ ինքնուրույն (ինքնագործ) կենցաղավարումը։ Բացի այդ, կենցաղի առարկայական միջավայրի (կահույքի, սպասքի ու տնային օգտագործման այլ իրերի) նկատմամբ մարդկանց վերաբերմունքի մեջ առավել կոնկրետ է արտահայտվում նրանց գեղարվեստական ու գեղագիտական ճաշակը։

Գաղտնիք չէ, որ մարդկային հարաբերություններն իրերի նկատմամբ բազմազան են։ Բայց այդ վերաբերմունքի մեջ միշտ էլ հստակ բացահայտվում են

մի կողմից՝ խելացիությունն ու գիտակցված անհրաժեշտությունը, մյուս կողմից՝ խոհեմությունը, անփութությունը, և ընդհանուր բարձիթողի վիճակը՝ երրորդ կողմից: Առարկայական միջավայրի կազմակերպման այս երեք տիպերից յուրաքանչյուրի մեջ կարելի է զանազանել յուրատեսակ ենթատիպեր ու տարբերակներ: Ինչպիսի՞ն է գեղագիտականի տեղը իրեղեն միջավայրի նման կազմակերպման տեսակների մեջ: Իհարկե, տարբեր: Բայց սոցիալիստական հասարակությունը նախապատվությունը տալիս է այդ միջավայրի խելացի կազմակերպմանը, որը բավարարում է մարդկանց անհրաժեշտ պահանջմունքները, թեթևացնում նրանց անձնական ու հասարակական կյանքը, զարդարում այն: Այդ միջավայրում ամեն մի առարկա ունի իր նշանակությունը՝ օգտակար, կենսականորեն կարևոր, բուն գեղարվեստական, գեղագիտական: Բայց առարկայական միջավայրի կազմակերպման երկրորդ տիպում մարդիկ դառնում են այդ իրերի գերին, մոդայի ստրուկը: Սխալ հասկացված «գեղեցկությունը» վեր է ածվում «ամենանորը», մինչև իսկ «ամենաթանկը» որոնելու մոլուցքի: Նման «որոնողները» սովորաբար դառնում են սեփական հեղինակության տեսանկյունից. «ինչո՞վ եմ պակաս նրանից», կամ հաճախ անխոհեմորեն ասում. «Այսպես է ընդունված»: Նրանց քիչ է հետաքրքրում, թե այդ ամենը որչափով է խելացի կազմակերպված, համապատասխանո՞ւմ է, արդյոք, կենցաղի իսկական կազմակերպման և դրա գեղագիտական պահանջներին:

Սովետական, մասնավորապես ողջ հայ ժողովրդի նյութական բարեկեցության աճը նպաստում է մեր կենցաղի առարկայական միջավայրի կատարելագործմանը, նրա ինչպես կենսական պահանջմունքներին, այնպես էլ ժամանակակից կուլտուրայի՝ հարմարավետության և գեղագիտական ճաշակի պահանջներին համապատասխան: Տնային օգտագործման առարկաները սովետական ընտանիքների մեծագույն մասում ավելի ու ավելի որոշակիորեն են դառնում, Հեգելի խոսքերով ասած «գոյ մեզ համար»: Դրանք հետզհետե առավել լրիվ չափով են յուրացվում իրենց իրական և ոչ թե թվացող կամ ֆետիշացվող արժեքներով: Այդպիսի դեպքերում դրսևորվում են կենցաղի առարկայական միջավայրի վերաբերյալ գեղագիտական սկզբունքները, երևան հանելով նպատակասլացություն և կամք՝ կենցաղի կազմակերպման և դրա գեղեցկության ապահովման գործում: Անհրաժեշտությունը, հետևաբար և խելացիությունը, չափի զգացումն ու լավ ճաշակը, արժեքույթային վերաբերմունքը կենցաղի առարկայական միջավայրի ձևավորման նկատմամբ ավելի լայնորեն են տարածվում մեր երկրում: Այդ պրոցեսների ու դրանց արդյունքների պրոպագանդումը, մեր հոգևոր մշակույթի այդ մարզում կուտակված փորձի իմաստավորումը կենցաղի էսթետիկայի առաջնահերթ խնդիրն են:

Այս առնչությամբ անհրաժեշտ է ճիշտ մեկնաբանել կենցաղի էսթետիկայի և տեխնիկական գեղագիտության ոլորտի, ինչպես նաև կենցաղի գեղարվեստական սկզբունքի ու պրոֆեսիոնալ արվեստի փոխադարձ հարաճուն կապերը: Տեխնիկական գեղագիտության ոլորտը գրեթե ամբողջովին վերահսկում է պետությունը: Հրամայականությունն ու հարկադրականությունը պարտադիր են նրա համար: Դրանում գլխավորը «պատվերն» է, որն արտացոլում է ամենից առաջ ժողովրդի հարաճուն պահանջմունքները, ինչպես նաև առևտրի պահանջներն առավել լրիվ բավարարելու և այլ երկրների հետ սովետական երկրի զարգացող տնտեսական հարաբերություններն ապահովելու անհրաժեշտությունը: Դրսևորելով արտադրության-սպառման դիալեկտիկան, տեխնիկական էսթետիկան միաժամանակ որոշ չափով նորմատիվային է, քանի որ համաձայնեցվում է համաշխարհային տեխնիկական ստանդարտի պահանջներին: Այն «աշխատում է» ողջ հասարակության համար, խստորեն հաշվի առնելով ո՛չ միայն այսօրվա, այլև «վաղվա» պահանջմունքները: Այդ գեղագիտությունը կոլեկտիվ լարված աշխատանքի այն ոլորտն է, որտեղ շարունակ փոխգործողության մեջ են անձնական կամ կոլեկտիվ նախաձեռնությունն ու հարկադրականությունը, խիստ ռացիոնալն ու զգայականը, կազմակերպումն ու ստորակարգությունը, նյութական և բարոյական խթանները, պլանը՝ որպես օրենք դարձած կոլեկտիվ ստեղծագործության արդյունք: Այդ կառուցվածքում գեղա-



գիտական հիմքը ենթարկված է օգտապաշտական-պրակտիկ նպատակներին, ուստի, գեղեցկությունը դրանում միջնորդավորվում է արտադրական աշխատանքի, արտադրական միջավայրի և բարձրորակ արտադրանքի միջոցով: Առանց դրանց տեխնիկական գեղագիտություն չկա և չի կարող լինել:

Ինչ վերաբերում է կենցաղի էսթետիկային, ապա այն, ինչպես արդեն նշվեց, զգալիորեն զերծ է պետական վերահսկողությունից և, մանավանդ, որևէ «պատվերից» կամ պարտադիր ստանդարտներից, թեև, իհարկե, կրում է հարկադրականության որոշ ներգործություն. օրինակ, տիպային բնակարանների, ստանդարտ կահույքի, հագուստի գրեթե միօրինականացված մոդայի միջոցով և այլն: Սակայն այդ հարկադրականության, հատկապես կենցաղի կազմակերպման մեջ ևս գերիշխում է տարերային սկզբունքը, միանգամայն ազատ դրսևորվում են անհատական հասկացողություններն ու պատկերացումները «լավի» ու «վատի», «գեղեցիկի» ու «այլանդակի» մասին: Գեղեցկությունը կենցաղում այնքան չի ենթարկվում աշխատանքին, որքան տեխնիկական գեղագիտության բնագավառում, որքան հանդես է գալիս որպես սովետական մարդկանց հոգևոր կյանքի համեմատաբար ինքնուրույն և շատ ուժեղ գործոն՝ նրանց արտադրահարաբերություններից դուրս: Ավելին, գեղարվեստական և գեղագիտական սկզբունքները դառնում են կենցաղի կարգավորման տարրեր՝ ձեռք բերելով հոգևոր ու դաստիարակչական մեծ նշանակություն: Կենցաղի այդ սկզբունքները «աշխատում են» ամենից առաջ մարդկանց անձնական կյանքի համար և հետո միայն նրանց միջոցով միջնորդավորվում արտադրական ոլորտում և հասարակական գործունեության մեջ:

Տեխնիկական և կենցաղի էսթետիկայի փոխադարձ կապն ակնհայտ է: Տեխնիկական էսթետիկայի ոլորտը ձևավորում է ճաշակը առարկայական միջավայրի նկատմամբ, աշխատողներին համակում արտադրական միջավայրի և ստեղծվող արտադրանքի գեղեցկության զգացումով, դրանով իսկ նպաստելով գեղարվեստական և գեղագիտական ճաշակի ձևավորմանը, որոնք այնուհետև արտահայտվում են սովետական մարդկանց կենցաղում և վարվելակերպում: Իսկ հեռուստատեսությամբ ու տրանզիստորներով, սառնարաններով և այլ էլեկտրասարքերով և, ընդհանրապես, «փոքր ինդուստրիայի» հարմարավետ ու գեղեցիկ առարկաներով հագեցվող կենցաղը ապահովում է մարդկանց լավ տրամադրությունն ու անհրաժեշտ կենսական լիարյունությունը: Կենցաղի «մեքենայացումը» բարձրացնում է մարդկանց տեխնիկական կուլտուրան, նկատելիորեն վերափոխելով նրանց հոգեբանությունը, որն աստիճանաբար ավելի դյուրազգաց ու դինամիկ է դառնում: Սակայն, բնակարանների ու դրանց կահավորանքի առավել ստանդարտայնությունը և միատեսակությունը, տնային աշխատանքի մեքենայացումը դրա հետ մեկտեղ զգալի չափով նեղացնում են անհատական ճաշակի դրսևորման, «տնային» հնարամտության հնարավորությունները, խանգարելով կյանքի սեփական «ընտանեկան» ոճի ձևավորմանը:

Համեմատաբար ավելի հեշտ է երևան գալիս կենցաղի էսթետիկայի և գեղարվեստական ստեղծագործության հարաբերակցությունը: Գլխավորն այստեղ այն է, որ, ինչպես գեղարվեստական սկզբունքը կենցաղում, նույնպես էլ գեղարվեստական ստեղծագործությունն ամբողջովին ազատ, կամավոր և ինքնագործ ոլորտներ են: Ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ դեպքում երևակայությունը, տաղանդը և գեղագիտական ճաշակը դրսևորվում են բազմապիսի ձևերով՝ դառնալով յուրատեսակ ինքնարտահայտություն և ինքնահաստատում: Այն բանում իսկ, թե ինչպես է կահավորվում բնակարանը, որպեսզի բոլոր առարկաները ոչ միայն ապահովեն բարեհարմարությունը, թեթևացնեն անձնական կյանքը, այլև «դիտվեն», հարուցելով տեսողական տպավորություններ, արտահայտվում է բնակարանում ապրողների գեղագիտական ճաշակը, հետևաբար նաև՝ գեղարվեստական սկզբունքը նրանց կենցաղում, որտեղ հատկապես մեծ է կանանց՝ մոր, կնոջ, դստեր կուլտուրականության և գեղագիտական ճաշակի դերը:

Անդրադառնալով կենցաղին, օրինաչափ կլինի խոսել «փոքրիկ աշխարհի»

(«միկրոաշխարհի») մասին, որը սոցիալական համապարփակ իրականության, զարգացած սոցիալիզմի բազմակառուցվածքայնության, սովետական ժողովրդի՝ ձևով բազմապիսի և իր ինտերնացիոնալ էությամբ միասնական կյանքի մի մասնիկն է։ Յուրաքանչյուր ընտանիք ստեղծում է այդ փոքր աշխարհը համապատասխան իր հասկացողության, ճաշակի, ստեղծագործական հնարագիտության և տաղանդի որոշակի աստիճանի, իր անդամներին օգնելով՝ չենթարկվել հարաճուն ստանդարտացմանը, որն ունակ է այլանդակելու ինքնավերահսկողությունից, արժանապատվության զգացումից ու գիտակցությունից զուրկ մարդկանց զգայական խառնվածքը։ Այդ միկրոաշխարհում խելացի կամ զուսպ (նպատակահարմար) դեկորատիվությունը, չծանրաբեռնված առարկայական միջավայրի մեղմ երանգավորումը և ոճային միասնությունը դառնում են կենցաղի էսթետիկական միջավայրը կազմակերպող էական բաղադրամասեր։ Իսկ կիրառական և դեկորատիվ արվեստի առարկաները (խեցեղեն, բյուրեղապակի և այլն), բուսականությունն ու տնային ծաղկաբուծությունն այդ միջավայրը դարձնում են ավելի հրապուրիչ և բովանդակալից։ Էստամպը, գեղարվեստական այս կամ այն լուսանկարը կամ քանդակադրոշմը, որով հատկապես աչքի են ընկնում հայ վարպետները, ճաշակով ու բանիմացությամբ հավաքված տնային գրադարանը, հեռուստացույցը, ինչպես նաև կուլտուրական գործածության կենցաղային այլ առարկաներ ընդլայնում են միկրոմիջավայրի շրջանակները, մեծացնելով տեսողական տպավորություններն ու հոգևոր սնունդ տալով խորհրդածությունների համար։

Այդ բոլոր իրերի շնորհիվ գեղագիտական միջավայրն ասես թե բացվում է դեպի լայն աշխարհ, որն առանձնապես հարուստ և իրական է դառնում այն ընտանիքների համար, ուր տնային ընթերցանությունը, երաժշտությունը, հանդիպումները հետաքրքրական մարդկանց հետ (առանց պարտադիր ճոխ սեղանների), դարձել են սովորական երևույթ։ Միկրոաշխարհն ընդլայնվում և բովանդակալից է դառնում շնորհիվ այն բանի, որ սիրողական լուսանկարչական գործը, կինոինքնագործունեությունը և ոչ պրոֆեսիոնալների գեղարվեստական ստեղծագործության մյուս ձևերը նույնպես դարձել են սովետական կենցաղի և, ավելի լայնորեն՝ սոցիալիստական ապրելակերպի անբաժան մասերը։ Այդպիսի ինքնագործունեությունը, լինելով հասարակական ստեղծագործության փորձված ձև, դրա հետ մեկտեղ մեր ապրելակերպի ու նրա էսթետիկայի մի մասն է։ Էլ չենք խոսում այն մասին, որ գեղագիտական պահանջմունքների բավարարման այնպիսի ձևեր, ինչպես՝ կինո, թատրոն և թանգարաններ հաճախելը, համերգներ լսելը, նույնպես սովետական կենսաձևի կարևոր տարրերն են և բացահայտում են նրա բովանդակության, գաղափարական նպատակասլացության էական մոմենտներն ու ասպեկտները։

Այս ամենը հիմք է տալիս խոսելու սովետական ապրելակերպի էսթետիկայի մասին, չնայած ասվածն ամենևին էլ չի սպառում դրա էությունը։ Եվ գիտակցելով ինչպես սովետական ապրելակերպի բնույթը, նույնպես և դրա գեղագիտական ասպեկտները, մեզնից յուրաքանչյուրը պետք է ջանա կատարելագործել այն, պարզ գիտակցելով, թե որքան նշանակալի է դրա դերը կոմունիստական շինարարության գործում։

ՄՈՍԿՎԱ

# ԻՆՉ Է ՀԵՏԱՊՆԴՈՒՄ «ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ» ԿԱՄՊԱՆԻԱՆ ՉԺՀ-ՈՒՄ

Լ. ԳՈՒԴՈՇՆԻԿՈՎ, Բ. ՖԻԼԻՊԻՆ

ՎԵՐՋԻՆ ԵՐԿՈՒ ՏԱՐՈՒՄ ՉԻՆԱՍՏԱՆԻ ներքաղաքական կյանքում իշխում էր «Լին Բյաոյի և Կոնֆուցիուսի քննադատության» («պի Լին, պի Կուն») մասսայական կամպանիան, որը որոշ նմանություն ունի տխրահռչակ «կուլտուրական հեղափոխության» հետ և վկայում է մաոական ռեժիմի չթուլացող քաղաքական և գաղափարախոսական ճգնաժամի մասին։ Կամպանիան բավական լայն թափ ստացավ, ընդգրկեց հասարակության շատ խավերի։ Դատելով ամեն ինչից, դրա ընթացքում մաոականները փորձում էին լուծել քաղաքական և գաղափարախոսական այն պրոբլեմներն ու հակասությունները, որոնք նրանց չէր հաջողվել հաղթահարել ներքաղաքական պայքարի նախորդ փուլերում։ Գործի էին դրվել յուրահատուկ միջոցներ՝ հրատապ խնդիրները դիտավորյալ միահյուսվել էին դարերի խավարից դուրս հանված իրադարձությունների հետ։

Իսկապես, թվում էր, թե ի՞նչ կապ կարող է լինել ավելի քան 2000 տարի սրանից առաջ ապրած չինական հին իմաստասեր Կոնֆուցիուսի և այժմ հանգուցյալ, դեռ մինչև վերջերս էլ չինական ղեկավարության մեջ «№ 2 մարդ» համարվող Լին Բյաոյի միջև։ Պարզվում է, ինչպես պնդում է պեկինյան պրոպագանդան, այդպիսի կապ կա, ըստ որում՝ ամենասերտ կապ. Լին Բյաոն մեղադրվում է կոնֆուցիականությունը տարածելու և Կոնֆուցիուսին պաշտպանելու մեջ։ Այդ գործիչների դիրքորոշումները մերկացնելու համար էլ, իբր, երկրում ծավալվեց «քննադատության» քաղաքական-գաղափարախոսական լայն կամպանիան։

Կամպանիայի համար սկիզբ ծառայեց «Ժենմին ժիբաո»-ի 1973 թվականի օգոստոսի 7-ի հոդվածը։ Այդ ժամանակից սկսած, Պեկինի մամուլում հրապարակվել են ամենատարբեր բնույթի բազմաթիվ նյութեր՝ նվիրված կոնֆուցիանական ուսմունքի տարբեր կողմերի քննադատական վերլուծությանը։

«Քննադատության» ներկայիս կամպանիայի բնույթն ու բովանդակությունը կասկած չեն թողնում, որ «գիտական» դիսկուսիայի անվան տակ ծավալվում է ներքաղաքական մի պայքար, որը ընդգրկում է չինական ղեկավարության գործունեության շատ ոլորտները և շոշափում երկրի կենսական պրոբլեմները։ Պեկինյան պրոպագանդան քանիցս խոստովանել է այդ կամպանիայի իսկական պատճառները, ի լուր ամենքի հայտարարելով, որ «Կոնֆուցիուսի քննադատությունը» նրա իսկական իմաստով քաղաքական պայքար է, որ «անձամբ ղեկավարում է նախագահ Մաոն և ցույց տալիս կուրսը» («Գուանմին ժիբաո», 1973 թ., դեկտեմբերի 6, «Խունցի», 1973, № 12)։

Նմանօրինակ կամպանիաների մշտական բնույթը ներկայիս Չինաստանի ներքաղաքական կյանքի առանձնահատկություններից մեկն է։ Այդ ճանապարհով չինական ղեկավարությունը ձգտում է լարվածության մեջ պահել ամբողջ ժողովրդին, նրան շեղել հետզհետե աճող դժվարություններից, որոնց ճահճուտն են գլորել երկիրը մաոականները։ «Քննադատության» ներկայիս մասսայական կամպանիան, ինչպես և նախորդ կամպանիաները («ռևիզիոնիզմի քննադատությունը և աշխատանքի ոճի ուղղումները», «կուլտուրական հեղափոխությունը», «Լյու Շաո-ցիի և Լին Բյաոյի

«վերադաստիարակման» ուղարկելու երկրի խուլ շրջանները, իսկ կոնֆուցիանական այն բարոյական սկզբունքը, որ «ուրիշին մի արա այն, ինչ քեզ չես ցանկանում», իբր ի չիք է դարձնում «հեղափոխական քննադատության ծավալումը ստորին խավերում»:

Միշտ չէ, որ գյուղացիական մասսաները կամովին հետևում են մաոականների կոչերին՝ զբաղվել ինքնախարազանմամբ, մատնագրեր հղել իրենց մերձավորների, մինչև իսկ երեխաները՝ ծնողների մասին: Ուստի, մաոական գաղափարական դաստիարակները կոչ են անում քայքայել ընտանեկան ավանդական հարաբերությունները, որոնք խոչընդոտ են հանդիսանում Մաոյի «գաղափարներին» արմատավորելու չինական հասարակության սկզբնական բջիջների սոցիալական կառուցվածքում: «Հոսանքին հակառակ ընթանալ» Մաոյի լոզունգն էլ բացահայտում է գործերի իսկական վիճակը Չինաստանում, երբ ժողովրդի մեծամասնությունը՝ «հոսանքը», չի ցանկանում կենսագործել մաոական գաղափարախոսների հերթական կամպանիաները, չի ցանկանում մաոականությունն ընդունել որպես միասնական և բացարձակ ճշմարտություն:

«Քննադատության» ներկայիս կամպանիայում, ինչպես նշվեց, կարելի է նկատել մաոական ղեկավարության տարբեր ֆրակցիաների պայքարը, որոնք այդ կամպանիան օգտագործում են Չինաստանի զարգացման ուղիների մասին քողարկված բանավեճ վարելու համար:

Եթե մի կողմ նետենք, այսպես ասած, զուտ անձնական հարձակումները Լին Բյաոյի վրա՝ որպես Կոնֆուցիուսի մոլի հետևորդի (Ջժունանխայի «բարեպաշտ» մաոականների կարծիքով), մեղադրանքները Չինաստանում «ֆեոդալական դինաստիա» ստեղծելու ձգտման մեջ, նրան վերագրվում է ամենից առաջ «արտադրությունը զարգացնելու» ձգտում՝ ի վնաս «հեղափոխությունը պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում շարունակելու» մաոական տեսության, որը նշանակում է աշխատավորների վրա ճնշման ուժեղացում և ռեպրեսիաներ՝ «դասակարգային պայքարի սրման» դրոշի ներքո: Լին Բյաոյին է վերագրվում նաև «մեծ թռիչքի» և ժողովրդական կոմունաների քննադատությունը՝ որպես «խոտորում և ցատկում» (հասարակական զարգացման աստիճանների վրայով), մաոականության քաղաքական մեթոդների դատապարտումը որպես «բռնակալական միապետություն», «կուլտուրական հեղափոխության դատապարտումը որպես «երկպառակտչական դաժան սպանություն», կադրային աշխատողների «վերադաստիարակման», «մայիսի 7-ի դպրոցների» դատապարտումը որպես «ձևափոխված գործազրկություն», երիտասարդներին դեպի հեռավոր գյուղերն ու լեռնային շրջանները ուղարկելու պրակտիկայի դատապարտումը որպես «մեծ հնարավորությունների անարդյունավետ օգտագործում» և այլն: Հազիվ թե նշված արտահայտություններն ու բնութագրերը կարելի է դիտել իբրև հակասոցիալիստական: Մաոականները Լին Բյաոյի անունն օգտագործում են, որպեսզի նրան քննադատելով խեղդեն այն մարդկանց ձայները, որոնք ՉԺՀ-ում չեն բաժանում մաոական գնահատականներն ու մոտեցումը երկրի քաղաքական և սոցիալ-տնտեսական կարևորագույն պրոբլեմների լուծման նկատմամբ:

Ինչպես արդեն ավանդույթ է դարձել Պեկինի համար, մաոական ամեն մի կամպանիա համեմվում է հակասովետականության բավական մեծ դոզայով: Այդպես եղավ նաև «Լին Բյաոյի և Կոնֆուցիուսի քննադատության» ներկա կամպանիայի ժամանակ: Չինական մամուլը հաղորդել է ինչ-որ «ժողովների մասին Մոսկվայում՝ ի պատիվ Կոնֆուցիուսի», «Կոնֆուցիուսի ուրվականի» մասին, որը, իբր, հառնում է ոչ միայն Պեկինում, այլև Մոսկվայում, «աջակցություն ցուցաբերելով բոլոր երանգների ռեվիզիոնիստներին» («Ժենմին ժիբաո», 1974 թ., հունվարի 24): Բայց այս բոլոր հերյուրանքները վկայում են լոկ այն մասին, որ Պեկինի ղեկավարները նորից ձըգտում են հակասովետական հիստերիայի ետևում թաքցնել իրենց դժվարությունները և իշխանության համար մղած ջղաձգային պայքարը:

Կարևոր է նաև նշել, որ կոնֆուցիանականության «քննադատության» պատրվակով մաոականները պայքար են մղում հումանիզմի, արդարության և օրինականության դեմ, ձգտում են վերացնել գաղափարական ու բարոյական կարգի ամեն մի խոչընդոտ՝ անօրինականության և կամայականության համար, օպոզիցիոն տարրերի հետ արտադատարանային հաշվեհարդարների համար: Նրանք կատաղի հարձա-



կումների են ենթարկում «մարդասիրական կառավարման» («ժեն չժեն») և «առաքինի կառավարման» («դե չժի») կոնֆուցիանական սկզբունքները, հայտարարելով, որ, հենց դրանք են «Կոնֆուցիուսի ռեակցիոն ուսմունքի» էությունը («Ժենմին ժիբաո», 1973 թ., օգոստոսի 7): Նիզակ ճոճելով «տիրապետել ինքզինքը և գործել ըստ հին դրույթների» արտահայտության կապակցությամբ, մաոականները ձգտում են վերացնել բոլոր խոչընդոտները՝ օրինականությունից լրիվ հրաժարվելու համար: Որպես պայքարի օբյեկտ՝ հին հայացքների օգտագործումը մաոականության գաղափարական-քաղաքական սնանկացման ևս մի վկայությունն է:

«Քննադատության» մաոական կամպանիան նորից մեզ մարքսիզմի, պատմության և փիլիսոփայության կեղծարարության անհերքելի փաստեր է տալիս (կեղծարարություն, որի նպատակն է արդարացնել պայքարը իշխանության համար, մեծապետական հեգեմոնիզմով և հակասովետականությամբ համեմված «զորանոցային կոմունիզմի» ռեակցիոն կոնցեպցիաների ոգով երկրի հասարակական կարգի հետագա վերափոխման համար), անողոք ռեպրեսիաների փաստեր: «Քննադատության» ներկայիս կամպանիաները լրիվ հիմքով կարելի է բնութագրել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի խոսքերով. «Տեղի է ունենում մտքերի մասսայական մշակում շովինիզմի, չարամիտ հակասովետականության ոգով» (Л. И. Брежнев. О внешней политике КПСС и Советского государства. Речи и статьи. Политиздат, 1973, стр. 171).

«Պի Լին, պի Կուն» կամպանիան արգելակեց պեկինյան ռեժիմի մի քանի միջոցառումների կիրառումը, որոնք նախատեսված էին 1973 թվականին և որոնց մեջ նկատելի էր ՉԺՀ-ի քաղաքական սիստեմը կայունացնելու նրա ձևերը՝ գոնե արտաքին պարամետրերով նախկին տեսքով վերաստեղծելու ձգտում: Նման միջոցառումների թվումն էր Չինաստանի արհմիութենական կազմակերպությունների, կոմերիտմիության, կանանց ֆեդերացիայի վերականգնումը մինչև համաչինական մակարդակով, ինչպես նաև չքավոր գյուղացիների և ցածր միջակների նահանգական կազմակերպությունների ստեղծման նախապատրաստումը (վերջին տվյալներով, այս միջոցառումները դեռևս պատրաստվում են):

Հարկ է նշել, որ արհմիությունները 1973 թվականի սկզբին վերանվանվել էին այսպես կոչված «հեղափոխական բանվորների ներկայացուցիչների կոնֆերանսների» («գունդայ»), որոնք «կուլտուրական հեղափոխությունից» հետո փոխարինեցին ցզաոֆանների կազմակերպություններին: «Գունդայները» կազմակերպման և գործունեության սկզբունքներով հեռու են իսկական արհմիություններից: Նրանց գործունեության անկյունաքարն էին դարձել մաոական քաղաքական խնդիրները (գլխավորապես «Մաո Ցզե-դունի գաղափարների» ուսումնասիրումն ու արմատավորումը) և աշխատանքի ինտենսիվացման հարցերը: Աշխատավորների բարեկեցության բարելավման խնդիրներն ու շահերի պաշտպանությունը գործնականորեն նրանց առջև չէին դրվում: Իսկ կոմերիտական և կանանց կազմակերպությունների ֆունկցիաները, եղած նյութերից դատելով, նույնպես հիմնականում հանգեցվել են «Մաոյի գաղափարների» ուսումնասիրմանն ու կենսագործմանը: Այսպիսով, ներկայիս այդ կազմակերպությունները կատարում են մասսաներին Մաո Ցզե-դունի ռազմա-բյուրոկրատական դիկտատուրայի ռեժիմի պաշտպանության ոգով գաղափարապես մշակելու խնդիրներ: Նրանք ընդհանուր ոչինչ չունեն սոցիալիստական երկրների հասարակական կազմակերպությունների հետ:

Սակայն գոյություն ունեցող ձևով էլ ՉԺՀ-ի՝ թվարկված հասարակական կազմակերպությունները չափազանց փոքր ակտիվություն են ցուցաբերում: ՉԿԿ X համագումարին հաջորդած ժամանակաշրջանում զգալիորեն ավելի մեծ ակտիվություն սկսեց ցուցաբերել վերակազմված ռազմականացած մի կազմակերպություն՝ «քաղաքային աշխարհազորը», որը «տեսաբանների ջոկատների» հետ միասին դարձավ հարվածային ուժ «Լին Բյաոյի և Կոնֆուցիուսի քննադատության» կամպանիայում. «Քաղաքային աշխարհազորը» կատարում է ոստիկանական ֆունկցիաներ և հանդիսանում է Չինաստանի բանվոր դասակարգի ռազմականացման որոշակի ձև ու միջոց:

Բուն ՉԿԿ-ի կառուցման հարցում շարունակվում է IX և X համագումարների կուրսը և կուսկազմակերպությունների «կարգավորման» պրակտիկան, որի հետևանքով «կուլտուրական հեղափոխության» տարիներին ջախջախված ՉԿԿ-ի փոխարեն

նույն անունով ստեղծվել է մի այլ, մաոական բնույթի քաղաքական նոր կազմակերպություն: Ներկայիս ՉԿԿ-ն կորցրել է հասարակության և պետության ղեկավար ուժի բնույթը, չնայած այն դեկլարատիվ հայտարարություններին, թե «կուսակցությունը ղեկավարում է ամեն ինչ»: Նրա բարձրագույն մարմիններն անգամ զրկված են իրենց գլխավոր իրավունքից՝ որոշել կուսակցության քաղաքական գիծը, քանի որ, ինչպես ՉԿԿ X համագումարում տված զեկուցման մեջ հայտարարեց Չժոու Էն-լայը, «նախագահ Մաո Ցզե-դունը մեր կուսակցության համար մշակել է հիմնական գիծն ու քաղաքականությունը սոցիալիզմի ողջ պատմական փուլի համար և որոշել սպեցիֆիկ գծերն ու քաղաքական դրույթները կոնկրետ աշխատանքի համար» («Ժենմին ժիբաո», 1973 թ., սեպտեմբերի 1):

Մաոական մտահղացմամբ, Չինաստանում նոր կուսկոմիտեներին կից ստեղծվում է ընդհանուր ապարատ՝ «հեղկոմներով», որը, Մաո Ցզե-դունի կարծիքով, իբր, վերացնում է «կրկնորդված վարչական ապարատը»: Բայց «հեղկոմների» բաժինները ոչ թե քաղաքական, այլ վարչական ու տնտեսական ղեկավարության մարմիններ են: ՉԿԿ-ն, կորցնելով պետության և հասարակության քաղաքական ղեկավարի բնույթը, վերածվում է վարչական ապարատի մի մասի, և, դրա հետ միասին, մասսաներին մաոական ռեժիմի պաշտպանության ոգով գաղափարապես մշակելու մեխանիզմի:

□

ՉԻՆԱՍՏԱՆՈՒՄ ՆԵՐՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ անընդմեջ զարգացումը ևս «նախապես ծրագրված» էր 4-րդ գումարման ժողովրդական ներկայացուցիչների համաչինական ժողովի վերջին նստաշրջանում, որը կայացավ այս տարվա հունվարին Պեկինում՝ դաժնյալ խստագույն գաղտնիության իրադրության մեջ: «Լին Բյաոյի և Կոնֆուցիուսի քննադատության» կամպանիան անմիջական կերպով կապված էր ԺՆՀԺ-ի նստաշրջանի նախապատրաստության հետ: Կամպանիայի անցկացումը, անկասկած, հետաձգեց նստաշրջանի գումարման ժամկետները: Համագումարի ավարտից մինչև ԺՆՀԺ-ի նստաշրջանի բացումն անցավ ավելի քան տասնվեց ամիս:

Այդ ամիսները, որոնք զուգադիպեցին «պի Լին, պի Կուն» կամպանիայի գագաթնակետի հետ, Չինաստանի մաոական ղեկավարության տարբեր ֆրակցիաներն օգտագործեցին ԺՆՀԺ-ի նստաշրջանում իրենց դիրքորոշումները նախապատրաստելու համար, որը նրանք դիտում էին ամենից առաջ որպես պետական պաշտոնների բաժանում և «կուլտուրական հեղափոխության»՝ իրենց համար շահավետ արդյունքների ամրագրում հիմնական օրենքի ձևով: «Ձախերը», հավանաբար, հաջողության էին հասել իրենց մարդկանց ԺՆՀԺ-ի կազմում անցկացնելու գործում, համենայն դեպս, նստաշրջանի մասին Սինխուայի պաշտոնական հաղորդագրության մեջ ասված էր, որ այդ մարմնի դեպուտատների մեծ մասը «առաջավոր մարդիկ են», որոնք աչքի են ընկել «մեծ պրոլետարական կուլտուրական հեղափոխության» ու «Լին Բյաոյի և Կոնֆուցիուսի քննադատության» շարժման մեջ: «Ձախերը» նշանակալի ներկայացուցչություն ձեռք բերեցին ԺՆՀԺ-ի Մշտական կոմիտեում: Պետական խորհրդում (ՉԺՀ-ի կառավարությունում) նրանք զգալի չափով ներկայացված են ղեկավարության միջին օղակում՝ պրեմիերի տեղակալների շրջանում, բայց անհամեմատ ավելի փոքր չափով՝ մինիստրական պաշտոններում, որոնք մեծ մասամբ բաժին ընկան զինվորականների շրջանից ելած հին կադրերին:

«Ձախերի» հաջողությունն աներկբայելի է նաև հիմնական օրենքի ձևակերպման գործում, թեև այդ փաստաթուղթը ևս իր վրա կրում է կոմպրոմիսի հետքեր: «Ուղղըված» սահմանադրության մեջ որպես ծրագրային դրույթներ մտել են «կուլտուրական հեղափոխության» հիմնական լոզունգները: Այն տոգորված է «պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում հեղափոխությունը շարունակելու» մաոական գաղափարի ոգով, որը իրականում նշանակում է բռնության ոչնչով չսահմանափակվող գործադրում չինական կոմունիստների և բոլոր աշխատավորների նկատմամբ, որոնք համաձայն չեն մաոականության կեղծ սոցիալիստական դրույթներին: Այդ նույն նպատակին են ծառայում նաև սոցիալիստական հասարակարգի գոյության ողջ ժամանակաընթացքում սրվող դասակարգային պայքարի գաղափարները, որոնցով տոգորված է նոր սահմանադրությունը: Համաշխարհային սոցիալիզմի պրակտիկայով ստուգված



պետական կառավարման և տնտեսվարման մեթոդները հավասարեցվում են կապիտալիզմի «վերականգնմանը»: Մաոական սահմանադրությունը կոչ է անում «պատրաստվել պատերազմի», ծավալում ոչ մեծ այդ փաստաթղթում (ընդամենը 30 հոդված) երեք անգամ կրկնվում է «սոցիալ-իմպերիալիզմի» (մաոականներն այդպես են անվանում սոցիալիզմի առաջին երկիրը) դեմ պայքարի կոչը:

Նման սկզբունքներից բացի, սահմանադրությունը պարունակում է այնպիսի դրույթներ, որոնք նախկինում չկային «ձախերի» քաղաքական զինանոցում: Այդպիսիք են, օրինակ, ըստ աշխատանքի վարձատրության (հոդվ. 9), ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը աստիճանաբար բարձրացնելու (հոդվ. 10), գյուղատնտեսական կոմունաների անդամների տնամերձ հողամասերի մասին դրույթները: Սահմանադրական այդ դրույթները չեզոքացնելու համար չէ՞ր, արդյոք, որ սահմանադրության ընդունումից հետո որոշ ժամանակ անց «պի Լին, պի Կուն» կամպանիայի հետ զուգընթաց ծավալվեց «պրոլետարիատի դիկտատուրան ամրապնդելու» կամպանիան՝ «բուրժուական իրավունքի» քննադատությամբ, ինչպես մաոականները անվանում են աշխատավորների նյութական շահագրգռությունը:

«Քննադատության» կամպանիաները, որոնք վերջին հաշվով պայմանավորված են իր գոյապայմանները բարելավելու ձգտող չին ժողովրդի արմատական շահերի և մաոական ղեկավարության մեծապետական պատվախնդրության միջև, ՉԺՀ-ի սոցիալիստական բազիսի և հակասոցիալիստական վերնաշենքի միջև եղած հակասությամբ, չլուծեցին և չեն էլ կարող լուծել Չինաստանի զարգացման հրատապ պրոբլեմները: Այդ պատճառով էլ մաոական ղեկավարությունը, «Լին Բյաոյի և Կոնֆուցիուսի քննադատությունը համակողմանիորեն, ամենուրեք ու երկարատև կերպով շարունակելու» կոչերի հետ միասին, սկզբնական շրջանում այդ շարժման շրջանակներում, կամպանիա ծավալեց «պրոլետարիատի դիկտատուրայի տեսության» մաոական վերսիայի ուսումնասիրության համար:

Այս նորագույն մասսայական կամպանիան «Լին Բյաոյի և Կոնֆուցիուսի քննադատության» շարունակությունն ու զարգացումն էր: Մաոական ռեժիմից չին ժողովրդի լայն խավերի ուժեղացող դժգոհությունը ստիպում է պեկինյան ղեկավարությանը նորից ու նորից ծավալել կամպանիաներ, որոնք ուղեկցվում են չին ժողովրդի լայն խավերում մասսայական պսիխոզի ու սարսափի բորբոքմամբ: Ըստ էության, դա վաղուց դարձել է հասարակության քաղաքական ղեկավարման մաոական մեթոդ: Կամպանիաների անցկացումը անբաժան է ոչ միայն երկրի ներսում, այլև միջազգային տեսակետից լարված իրադրություն ստեղծելու Պեկինի ձգտումից, իսկ հակասովետականությունը որպես անբաժան բաղադրամաս մտնում է այդ քաղաքականության մեջ:

Քաղաքական-գաղափարախոսական կամպանիաների ընթացքում դրանց ոգեշնչողները մաոական ոգով խեղաթյուրում են մարքսիզմ-լենինիզմը: «Պրոլետարիատի դիկտատուրան ամրապնդելու» համար ծավալված ներկայիս կամպանիայում պեկինյան գաղափարախոսները կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանը, հակառակ այն բանի, ինչ սովորեցրել են Մարքսը և Լենինը, տարածում են նաև կոմունիստական ֆորմացիայի առաջին փուլի՝ սոցիալիզմի վրա: Եվ դա արվել է որոշակի նպատակով՝ ապացուցել, որ «դասակարգային պայքարը և հոսանքների պայքարը», որ Չինաստանում բորբոքում են Մաո Ցզե-դունի ցուցումով, ինչպես վերջերս գրել է «տեսաբան» Յաո Վեն-յուանը, «շարունակվելու են դեռ երկար ժամանակ, սոցիալիզմի ամբողջ ժամանակաշրջանում» («Ժենմին ժիբաո», 1975 թ., մարտի 1):

«Պրոլետարիատի դիկտատուրայի տեսության ուսումնասիրման» կամպանիային նվիրված բազմաթիվ հոդվածների վերլուծությունը կասկած չի թողնում, որ խոսքը մարքսիզմ-լենինիզմի հետագա ռևիզիայի մասին է, որը կատարվում է «պրոլետարիատի դիկտատուրան ուժեղացնելու» անվան տակ՝ զտումների և ռեպրեսիաների մոտալուտ նոր կամպանիան «տեսականորեն» հիմնավորելու նպատակով:

Դրանում հեշտ է համոզվել, եթե միայն ուշադրություն դարձնենք, թե պրոլետարիատի դիկտատուրայի ո՞ր ֆունկցիայի վրա են շեշտը դնում այսօր Պեկինում: «Խունցի» հանդեսի այս տարվա մարտյան համարում տպագրված Յաո Վեն-յուանի «Լին Բյաոյի հակակուսակցական խմբավորման սոցիալական հիմքի մասին» հոդվա-

ծից բխում է, որ ներկա փուլում պրոլետարիատի դիկտատուրայի հիմնական խնդիրը Չինաստանում ճնշումն է և ռեպրեսիաները: Բայց քաջ հայտնի է, որ սոցիալիստական հեղափոխության մեջ պրոլետարիատի կողմից իշխանությունը նվաճելուց հետո պրոլետարիատի դիկտատուրայի էությունը, ինչպես ընդգծում էր Վ. Ի. Լենինը, «միայն բռնության մեջ չէ և ոչ էլ գլխավորապես բռնության մեջ: Նրա գլխավոր էությունը աշխատավորների առաջավոր ջոկատի, նրա ավանգարդի, նրա միակ ղեկավարի, պրոլետարիատի կազմակերպվածությունն ու կարգապահությունն է: Նրա նպատակն է՝ ստեղծել սոցիալիզմ...» (Երկեր, հատ. 29, էջ 476): Այսպիսով, պրոլետարիատի դիկտատուրայի հիմնական խնդիրը հասարակության սոցիալ-տնտեսական վերափոխումն է, նոր հասարակարգի կառուցումը, այսինքն՝ ստեղծագործումը, տնտեսական գործունեությունը, այլ ոչ թե ճնշումն ու ռեպրեսիաները:

□

ՍԱԿԱՅՆ, ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԶՏՈՒՄՆԵՐԻ ՈՒ «ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ» և ոչ մի կամպանիա ի վիճակի չէ ճնշելու չին աշխատավորների արդարացի ձգտումը դեպի իսկական սոցիալիզմ: Ներքաղաքական պայքարը Չինաստանում շարունակվում է: Դրա երկարատև բնույթը վկայում է մաոական ռեժիմի հարաճուն դժվարությունների և հակասությունների մասին: Այդ ամենն անխուսափելիորեն անդրադառնում է չինական հասարակության «մտքերի վիճակի» վրա, խթանելով դժգոհության և մաոականության նկատմամբ օպոզիցիոն տրամադրությունների հետագա աճը, որոնք ընդգրկում են բնակչության ավելի ու ավելի լայն խավեր:

«Международная жизнь», 1975, № 7.

---

# ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ԸՆԴԱՌԱՋ

## ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԿԱՆԸ

**Հ. Ս. ՇԱՐԲԱԹՅԱՆ**
ՀԿԿ Գուգարքի շրջկոմի
առաջին քարտուղար

ՄԵՐ ԱՌՕՐՅԱՆ ՀԱՐՈՒՍՏ է սովետական մարդկանց աշխատանքային մեծագործություններով: Ամենուրեք նկատվում է նրանց քաղաքական ու արտադրական մեծ ակտիվությունը, որի պտուղներն ակնհայտ են տնտեսական և կուլտուրական շինարարության ամեն մի տեղամասում: Արտադրական կոլեկտիվները ձգտում են հաջողությամբ ավարտել հնգամյակը, արժանավայել գործերով դիմավորել ՍՄԿԿ XXV համագումարը: Այդպիսի վճռականությամբ են համակված նաև մեր շրջանի աշխատավորները:

Շրջանի էկոնոմիկայի առաջատար ճյուղը անասնապահությունն է: Հնգամյակի անցած չորս տարիներին այդ բնագավառում ձեռք են բերվել որոշակի հաջողություններ. պլանից ավելի (ներառյալ արտապլանայինը) պետությանն են վաճառվել միս՝ 2.885, կաթ՝ 885, բուրդ՝ 34 տոննա, ձու՝ 442 հազար հատ:

Գործերը հաջող են ընթանում նաև եզրափակիչ տարում: Առաջին կիսամյակում մսի պետգնման պլանը կատարվեց 117,4, կաթինը՝ 106, ձվինը՝ 131 և բրդինը՝ 143 տոկոսով (ներառյալ արտապլանային առաջադրանքները):

Զգալի աշխատանք է կատարվել նաև շինարարության և արդյունաբերության զարգացման ասպարեզում:

Ընթացիկ տարվա երկրորդ եռամսյակում արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, արտադրանքի իրացման պլանը կատարեցին 108,8, աշխատանքի արտադրողականությանը՝ 114,2 տոկոսով: Արտադրության ծավալն աճեց 23,9, աշխատանքի արտադրողականությանը՝ 22,1 տոկոսով: Այս բարձր արդյունքների համար շրջանի արդյունաբերության աշխատողներն արժանացան ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին և դրամական մրցանակների: Դրական լուրջ տեղաշարժեր կան բնակչության կենցաղսպասարկման, առողջապահության, կուլտուրայի, լուսավորության և մյուս բնագավառներում:

Նշված և մյուս հասումները հիմնականում արդյունք են կադրերի ճիշտ ընտրության ու տեղաբաշխման, նրանց հետ տարվող քաղաքական-դաստիարակչական և կազմակերպչական հետևողական աշխատանքի:

Կադրերի հարցը միշտ առաջնակարգ տեղ է գրավել կուսակցության քաղաքականության մեջ: Վ. Ի. Լենինը ղեկավար կադրերի առաջքաշման և դաստիարակության նկատմամբ մշտական հոգատարությունը համարել է բանվոր դասակարգի հաղթանակի կարևորագույն պայմաններից մեկը: «Պատմության

մեջ ոչ մի դասակարգ տիրապետություն ձեռք չի բերել, եթե նա առաջ չի քաշել իր այն քաղաքական առաջնորդներին և առաջավոր ներկայացուցիչներին, որոնք ընդունակ են շարժումը կազմակերպել և ղեկավարել» (Երկեր, հ. 4, էջ 475)։

Կադրերի հետ տարվող աշխատանքին մեծ ուշադրություն նվիրեց ՍՄԿԿ XXIV համագումարը։ Այն նշեց, որ «Հասարակության կյանքի բոլոր կողմերի ղեկավարման, մասսաների մեջ կատարվող կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացումը անխզելիորեն կապված է կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության բարելավման հետ» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 131)։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումը (1975 թ.) ևս հանգամանորեն անդրադարձավ կադրերի հետ տարվող աշխատանքի արմատական բարելավման ու հետագա կատարելագործման խնդրին։ Պլենումը պահանջեց շտկել այդ ասպարեզում թույլ տրված սխալները և կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության ընթացքում անշեղորեն ղեկավարվել լենինյան սկզբունքներով։

Գուգարքի կուսշրջկոմը կադրերի հետ տարվող աշխատանքը, նրանց ընտրությունն ու տեղաբաշխումը դիտում է որպես առաջնային խնդիր և համարում իր գործունեության կարևոր կողմերից մեկը։

Կադրերի ընտրության ժամանակ, ինչպես պահանջում է կուսակցությունը, մենք, առաջին հերթին, հաշվի ենք առնում նրանց քաղաքական ու գործնական հատկանիշները, կրթական ու մասնագիտական պատրաստականությունը։ Գյուղատնտեսության, արդյունաբերության, շինարարության և շրջանի էկոնոմիկայի մյուս բնագավառների ղեկավարները հիմնականում ունեն մասնագիտական կրթություն, նրանց մեծ մասը առաջ է քաշվել շարքային աշխատանքից։ Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները համալրվել են կազմակերպչական ունակություններով օժտված մարդկանցով։ Միաժամանակ մենք հոգատարությամբ ենք վերաբերվում հին կադրերին, որոնք ունեն անհրաժեշտ գիտելիքներ, և օգտագործում ենք նրանց աշխատանքի հարուստ փորձը։

Կուսշրջկոմը չի հրապուրվում կադրերի անհարկի տեղաշարժերով, բայց և չի հանդուրժում նրանց, ովքեր անհրաժեշտ հետևություններ չեն անում իրենց հասցեին արված քննադատությունից, չեն վերակառուցում իրենց գործունեությունը, կարգավորում գործերի վիճակը։ Այժմ շրջանում կադրերի հետ տարվող աշխատանքում հաստատել ենք այնպիսի կարգ, երբ մարդկանց նկատմամբ վստահությունն ու հարգանքը զուգորդվում են նրանց նկատմամբ սկզբունքային պահանջկոտության հետ։ Շրջկոմը պարբերաբար անդրադառնում է այն տնտեսությունների ու կազմակերպությունների գործունեությանը, որտեղ գործերի վիճակը բարելավելու կարիք է զգացվում։ Այսպես, ընթացիկ տարվա սկզբին շրջկոմի բյուրոն անդրադարձավ տնտեսական տարին վնասով փակող տնտեսությունների գործունեությանը և բացահայտեց մի շարք լուրջ թերություններ ու սխալներ։ Լեռնապատի, Վահագնիի, Արջուտի, Մեղրուտի պետական տնտեսությունների դիրեկտորներն ազատվեցին իրենց պաշտոնից, որովհետև նրանք այլևս ի վիճակի չէին ապահովել պետական առաջադրանքների կատարումը։ Որպես սկզբունք, իրենց անբավարար դրսևորած կադրերն ուղարկվում են ավելի ցածր աշխատանքի։ Այսպես, Վահագնիի սովխոզի նախկին դիրեկտոր Ա. Այվազյանը նշանակվեց կաթնապրանքային ֆերմայի բրիգադավար։

Հասարակության զարգացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը զուգընթաց կյանքն անընդհատ բարձրացնում է կադրերին ներկայացվող պահանջները։ Առաջընթացն ապահովում են նրանք, ովքեր քաղաքական բարձր գիտակցականությունը զուգորդում են պրոֆեսիոնալ լավ պատրաստության հետ, կարողանում են գործիմացությամբ լուծել տնտեսական ու կուլտուրական զարգացման խնդիրները, տիրապետում են կառավարման ժամանակակից մեթոդներին։ Այս առումով մեր շրջանում կան շատ օրինակներ, սակայն ավելի բնորոշը Համզաչիմանի պետական տնտեսությունն է։ Տարիներ



առաջ այս սովխոզը չէր առաջադիմում, աշխատում էր մեծ վնասով։ Այստեղ փոփոխվում էին ղեկավարները, սակայն արտադրական ճյուղերում էական տեղաշարժեր չէին նկատվում։ Տասը տարի առաջ սովխոզի դիրեկտոր նշանակվեց Ս. Անանյանը։ Այն ժամանակ տնտեսության վնասը հասնում էր 245 հազար ռուբլու։ Դիրեկցիայի և կուսկազմակերպության միասնական, հետևողական գործունեությամբ կարճ ժամանակում փոխվեց տնտեսության դեմքը, նկատելիորեն ամրապնդվեց կարգապահությունը, բարելավվեց գործերի վիճակը արտադրական տեղամասերում, ավելացան եկամուտները, սովխոզը դարձավ շահութաբեր. անցած տարի օգուտները կազմեցին 238,6 հազար ռուբլի։

Կուսակցությունը մշտապես բարձր է գնահատում աշխատողների այնպիսի հատկությունը, ինչպիսին է նորի զգացումը։ «Ունենալ նորի զգացում,— ասել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,— նշանակում է տեսնել զարգացման հեռանկարը, հայացքն ուղղել դեպի ապագան, գտնել ծագող խնդիրների լուծման առավել ճշգրիտ ուղիներ։ Այժմ, երբ հասարակական կյանքում և արտադրության մեջ տեղի են ունենում արագ և խոր փոփոխություններ, այդ հատկությունն առանձնապես կարևոր նշանակություն է ստանում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 132—133)։ Տնտեսական բարձր ցուցանիշների հետ միասին հարկավոր է բարձրացնել արտադրության վարման կուլտուրան, բարելավել արտադրանքի որակը, արմատավորել նորն ու առաջավորը, դրական փորձը, արդյունավետ կազմակերպել աշխատողների կուլտուրական հանգիստը։ Սրանք հարցեր են, որոնց անտեսումը չի կարող բացասաբար չանդրադառնալ գործերի վիճակի վրա։ Այս առումով ուշադրության է արժանի գյուղական շինարարության մինիստրության երկաթբետոնե իրերի կոմբինատի օրինակը։ Կոմբինատը վերջին երկու տարում սիստեմատիկաբար կատարում է իր առաջադրանքները, որի համար քանիցս արժանացել է շրջանային, հանրապետական և միութենական խրախուսանքի։ Ձեռնարկությունը նախկինում նույնպես, պլանային առաջադրանքները կատարելու համար, արժանացել է խրախուսանքի։ Սակայն այժմ արմատապես փոխվել է իրավիճակը. բարձրացել է արտադրության վարման կուլտուրան, ամրապնդվել պետական ու արտադրական կարգապահությունը, մարդիկ գիտակցական վերաբերմունք են դրսևորում աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ։ Այս ամենը բացատրվում է կադրերի արգասավոր գործունեությամբ, նրանց քաղաքական հասունությամբ։ Դիրեկցիան (դիրեկտոր՝ Ս. Պետրոսյան), կուսկազմակերպությունը (քարտուղար՝ Վ. Ավետիքյան) արդյունավետ են օգտագործում միջին օղակի կադրերի, կոմունիստների ուժերը, մոբիլիզացնում բանվորական կոլեկտիվը՝ արտադրական ծրագիրը հաջողությամբ լուծելու համար։ Այստեղ բարենպաստ պայմաններ են ստեղծվել ձեռնարկության հետագա առաջընթացի, բանվորների աշխատանքի ու հանգստի համար։

Շրջանի ղեկավար կադրերի գործունեության մեջ կարևորագույն տեղ են գրավում մարդկանց կազմակերպումն ու դաստիարակությունը։ Մեր կուսակցությունը մշտապես շեշտում է տնտեսական ու դաստիարակչական գործունեության օրգանական կապի անհրաժեշտությունը, պահանջում, որ ղեկավար աշխատողները խորհեն իրենց ընդունած տնտեսական և վարչական որոշումների դաստիարակչական հետևանքների մասին։ Փորձը ցույց է տվել, որ վարչարարությունը, միայն հրամաններով ու կարգադրություններով աշխատելը, առանց դաստիարակչական, բացատրական աշխատանքի, ցանկալի արդյունք չեն կարող տալ։ Հետևաբար, ղեկավարը պարտավոր է կուսկազմակերպության հետ միասին կոլեկտիվի շրջանում ծավալել քաղաքական, գաղափարական և կազմակերպական անհրաժեշտ գործունեություն, բանվորներին, ինժեներատեխնիկական և մյուս աշխատողներին դաստիարակել կոմունիստական բարձր գիտակցականության, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքների ոգով։ Այս առումով մեր շրջանում ուսանելի օրինակներ կան. տնտեսական շատ ղեկավարներ պրոպագանդիստներ են, անհրաժեշտ պատասխանատվություն են ցուցաբերում կոլեկտիվի դաստիարակության և նրանց գիտակցականության բարձրացման նկատմամբ։ Ուշադրության է արժանի կա-

թի գործարանի դիրեկտոր Հ. Փաշինյանի և կուսկազմակերպության քարտուղար Ռ. Սարգսյանի աշխատանքը։ Նրանք մշտապես զբաղվում են կոլեկտիվի անդամների դաստիարակությամբ։ Առաջինը ՍՄԿԿ պատմությունն ուսումնասիրող քաղդպրոցի պրոպագանդիստն է, երկրորդը՝ կոմունիստական աշխատանքի դպրոցի ղեկավարը։ Երկուսն էլ պրոպագանդիստական հարուստ փորձ ունեն, պարապմունքներն անցկացնում են գաղափարական բարձր մակարդակով, ուսումնասիրվող թեմաները սերտորեն շաղկապում արտադրական խնդիրների հետ, ծառայեցնում դրանց լուծմանը։ Կոմունիստների, կոլեկտիվի անդամների գաղափարական կոփումը նրանց մտահոգության առարկան է։ Եվ բնավ զարմանալի չէ, որ գործարանում զգալիորեն ամրապնդվել է աշխատանքային ու պետական կարգապահությունը, կատարվում են արտադրական առաջադրանքները։ Ձեռնարկության կոլեկտիվը հնգամյա ծրագիրը կատարել է չորսուկես տարում։ Հ. Փաշինյանը լավ է կատարում ղեկավարի իր պարտականությունը, բանիմացության, կազմակերպական ու բարոյական լավագույն հատկանիշների համար վայելում կոլեկտիվի և շրջանի ակտիվի հարգանքը։

Կուսակցությունը միշտ էլ խորհուրդ է տվել՝ կանանց համարձակորեն առաջ քաշել ղեկավար աշխատանքի, ճիշտ նպատակամղել նրանց ուժերը, օգնել նրանց՝ լիարժեք դրսևորելու իրենց կազմակերպչական ունակությունները։ Կուսշրջկոմն անհրաժեշտ հոգատարություն է ցուցաբերում նաև կանանց ղեկավար պաշտոնի առաջ քաշելու նկատմամբ։ Մեր շրջանի կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար մարմիններում նկատելիորեն ավելացել է կանանց թիվը։ Նրանցից շատերը աչքի են ընկնում իրենց ակտիվ ու արդյունավետ գործունեությամբ։ Առանձնապես գովելի է Եղեգնուտի գյուղական սովետի նախագահ Հռիփսիմե Պողոսյանի, Քոլագիրանի ավանային սովետի նախագահ Սեդա Հովեյանի և ուրիշների գործունեությունը։ Մեծ է նրանց ներդրումը հանրային տնտեսությունների առաջընթացի, բնակավայրերի բարեկարգման գործում։

Կադրերի տեղաբաշխման գործի հաջողությունը մեծապես պայմանավորված է նրա ռեզերվի ստեղծմամբ, փոխարինողների ճիշտ ընտրությամբ։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանը Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումում կադրային քաղաքականության կարևոր խնդիրներից մեկը համարեց կադրերի ընտրության կազմակերպումը գիտական հիմքի վրա, գործնական աշխատանքում աճած և ստուգված կադրերի ակտիվ ռեզերվի ստեղծումը։ Այդ խնդրի լուծման համար վճռական նշանակություն ունի կուսակցական և պետական գործունեության մեջ հասարակական հիմունքներով մասսաների ներգրավումը։ Դա հնարավորություն է ընձեռում լավ ուսումնասիրել նրանց, փորձել պրակտիկ կյանքում, դաստիարակչական անհրաժեշտ աշխատանքի միջոցով նրանց մեջ զարգացնել կազմակերպչական ունակություններ, նախապատրաստել ղեկավար աշխատանքում փոխարինելու համար։ Այս առումով մեզ մոտ գործերը համեմատաբար բարեհաջող են։ Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն անհրաժեշտ հետևողականությամբ են զբաղվում ղեկավար կադրերի փոխարինողների նախապատրաստմամբ։ Երիտասարդ շատ աշխատողներ ընտրվել են տեղական սովետների դեպուտատներ, կուսակցության և կոմերիտմիության շրջանային կոմիտեների անդամներ, ներգրավվել են ժողովրդական վերահսկողության խմբերում, ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող և այլ հանձնաժողովների կազմում։

Կադրային քաղաքականության մեջ առաջնահերթ կարևորություն ունի մարդկանց դաստիարակության ճիշտ կազմակերպումը։ Մեզ մոտ կիրառվում են կադրերի դաստիարակության զանազան ձևեր։ Դրանցից մեկը կուսշրջկոմի բյուրոյի նիստերում և սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում կադրերի գործունեությանն առնչվող զանազան հարցերի քննարկումն է, հաշվետվությունների ունկնդրումը։ Նման մեթոդը զգաստացնում է կադրերին, բարձրացնում նրանց պատասխանատվությունը։ Անցած երկու տարում կուսշրջկոմի բյուրոյի նիստերում քննարկել ենք Վահագնիի, գազանաբուծական,



Ձորագյուղի և այլ սովխոզների կուսկազմակերպությունների հաշվետվությունը իրենց գործունեության, Անտառամուտի, Եղեգնուտի, Դեբետի սովխոզների կուսկազմակերպություններին՝ որոշումների կատարման ընթացքի վերաբերյալ։ Այդ քննարկումները նկատելիորեն նպաստում են գործերի վիճակի բարելավմանը, պետական առաջադրանքների կատարմանը։ Ընթացիկ տարվա փետրվարին շրջկոմի բյուրոյի նիստում քննարկեցինք Վահագնիի և Արջուտի սովխոզների կուսկազմակերպություններում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության վիճակը։ Արժեքավորելով այս ասպարեզում կատարված որոշ դրական աշխատանքը՝ բյուրոն միաժամանակ բացահայտեց մի շարք լուրջ թերություններ։ Նշվեց, որ կուսկազմակերպությունները վատ են զբաղվում այդ գործով, երբեմն ղեկավար պաշտոններում առաջ են քաշում կազմակերպչական և քաղաքական անհրաժեշտ արժանիքներ չունեցող, վստահություն չներշնչող և իրենց վատ դրսևորած մարդկանց։ Անբավարար պահանջկոտության պատճառով առանձին կադրերի մոտ թույլ է կարգապահությունը։ Բյուրոն այս ամենով բացատրեց որոշ ճյուղերի ետ մնալը, պլանների և պարտավորությունների թերակատարումը։ Հանձնարարվեց կուսկազմակերպություններին՝ կադրերի ընտրության ու տեղաբաշխման ժամանակ ղեկավարվել լենինյան ցուցումներով ու կուսակցության պահանջներով, այսինքն՝ հաշվի առնել նրանց քաղաքական ու գործնական հատկանիշները, կրթական մակարդակն ու պրոֆեսիոնալ պատրաստականությունը, շերտավորված ու հետևողական աշխատանք տանել լավագույն կադրերի կազմը կայունացնելու, նրանց արժանի փոխարինողներ պատրաստելու համար։ Պետք է ասել, որ այդ որոշումը դրական ազդեցություն ունեցավ ո՛չ միայն Վահագնիի ու Արջուտի, այլև մյուս կուսկազմակերպություններում կադրերի հետ տարվող աշխատանքի վրա։

Այսպիսով, կադրերի ընտրության ու տեղաբաշխման հոգսն ընկած է ո՛չ միայն կուսշրջկոմի, այլև սկզբնական կուսկազմակերպությունների վրա։ Եվ նրանք իրենց տեսադաշտում են պահում այդ խնդիրը։ Կադրերի տեղաշարժերը կատարվում են կուսկազմակերպությունների գիտությամբ։

Կադրերի դաստիարակության գործում կարևոր նշանակություն ունեն կուսակցական, սովետական, տնտեսական աշխատողների պատրաստումն ու վերապատրաստումը։ Շրջկոմը մշտապես և հետևողականորեն զբաղվում է նրանց որակավորմամբ, ընդգրկում որակավորման բարձրացման ֆակուլտետներում ու դասընթացներում, քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման մեջ։ Վերջերս շրջկոմի բյուրոյի որոշմամբ ստեղծվեց գյուղատնտեսության աշխատողների ժողովրդական համալսարան՝ գյուղատնտեսության էկոնոմիկայի, բուսաբուծության և մեխանիզացիայի ֆակուլտետներով։ Դրանցում ընդգրկվել են նաև շրջանի առաջավոր մասնագետները։

Սակայն կադրերի ուսուցման հիմնական մեթոդը ինքնուրույն աշխատանքն է։ Հետևում ենք, որպեսզի բոլոր կադրերը, կոմունիստները մշտապես սովորեն, բարձրացնեն իրենց գաղափարա-տեսական մակարդակը, տիրապետեն գիտության և առաջավոր փորձի նվաճումներին։ Կուսշրջկոմը անհրաժեշտ օգնություն է ցույց տալիս ղեկավար կադրերին՝ տիրապետելու մարքս-լենինյան տեսությանը, նրանց դաստիարակում է կուսակցության և ժողովրդի հանդեպ պատասխանատվության բարձր զգացման, գործնականության ու կազմակերպվածության, թերությունների հանդեպ անհաշտելիության ոգով։

Շրջանային կոմիտեն, ըստ արժանվույն գնահատելով կադրերի գործունեությունը, հոգատարություն է ցուցաբերում նրանց նկատմամբ, վստահությունը զուգորդելով բարձր պահանջկոտության հետ։ Այսպիսին է կադրերի հետ տարվող աշխատանքի նպատակը, որը բխում է մեր կուսակցության XXIV համագումարի պահանջներից։ «Այժմ մեզանում,— համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասաց Լ. Ի. Բրեժնևը,— կադրերի հետ տարվող աշխատանքում հաստատվել է այնպիսի պրակտիկա, երբ մարդկանց նկատմամբ վստահությունն ու հարգանքը զուգորդվում են նրանց նկատմամբ սկզբունքային պահանջկոտության հետ։ Այս ամենը գործարար, ընկերական

մթնոլորտ է ստեղծում, աշխատողներին թույլ է տալիս ավելի լրիվ դրսևորել իրենց ունակությունները (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 132)։

Այս միտքը հաստատող շատ օրինակներից նշեմ միայն մեկը։ Մի քանի տարի առաջ Լերմոնտովոյի սովխոզի դիրեկտոր առաջ քաշեցինք Ս. Սարգսյանին, որը մինչ այդ աշխատում էր Լենինապատի սովխոզի անասնաբույժ։ Այդ գործում նա իրեն լավ դրսևորեց, ամրապնդեց աշխատանքային ու պետական կարգապահությունը, վերելքի ուղի դուրս բերեց տնտեսությունը, որն սկսեց տարին փակել օգուտով։ Հաշվի առնելով Սարգսյանի քաղաքական ու գործնական հատկանիշները, կուսշրջկոմը նրան վստահեց ավելի խոշոր տնտեսության՝ Մեղրուտի սովխոզի դիրեկտորի պաշտոնը։ Ինչպես ցույց են տալիս արդյունքները, այստեղ նույնպես գործերի վիճակը բարվոք է. առաջադրանքները կատարվում են հաջողությամբ։

Խոսելով կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործի հաջողությունների մասին, միաժամանակ պետք է ընդունել, որ այդ ասպարեզում մեզ մոտ կան մի շարք լուրջ թերություններ։ Առանձին կուսկազմակերպություններում (Գյոզալդարայի, Լենինապատի, Լերմոնտովոյի գազանաբուծական սովխոզներ) անհրաժեշտ բարձրության վրա չէ կադրերի հետ տարվող աշխատանքը։ Կադրերի ընտրության ու տեղաբաշխման ժամանակ երբեմն դրսևորվում են անսկզբունքայնություն, լիբերալություն։ Եվ պատահական չէ, որ նրանցից ոմանք հետագայում կատարում են կոմունիստին անվայել արարքներ։ Կուսակցական ու պետական կարգապահությունը խախտելու, իրենց վստահված տեղամասերի գործերն անբավարար գլխավորելու և ձախողելու համար կուսշրջկոմի բյուրոն ղեկավար ու միջին օղակի մի շարք կադրերի ենթարկել է կուսակցական խիստ պատասխանատվության։

Երբեմն կուսկազմակերպությունները դրսևորում են ավելորդ բարեհոգություն։ Այսպես, կերի շռայլումներ կատարելու համար Լենինապատի սովխոզի կուսկազմակերպությունը ոչխարաբուծական ֆերմայի վարիչ՝ կոմունիստ Ա. Ոսկանյանի նկատմամբ ցուցաբերել է անսկզբունքայնություն, բավարարվել նրան նկատողություն հայտարարելով։ Շրջկոմի բյուրոն չհաստատեց կուսկազմակերպության ժողովի որոշումը և Ա. Ոսկանյանին վտարեց ՍՄԿԿ շարքերից։ Համանման փաստեր եղել են նաև ուրիշ կազմակերպություններում։

Ավարտվում է իններորդ հնգամյակը։ Մեր կադրերից պահանջվում է գործադրել եղած բոլոր հնարավորություններն ու ռեզերվները՝ այն հաջողությամբ եզրափակելու, պետության և ժողովրդի հանդեպ ունեցած պարտքը պատվով կատարելու համար։ ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցության XXV համագումարն արժանավայել դիմավորելու վերաբերյալ վերջերս ընդունած իր որոշմամբ կուսկոմիտեների, սկզբնական կուսկազմակերպությունների, ղեկավար բոլոր կադրերի առջև խնդիր դրեց՝ աշխատավորական լայն զանգվածներին ներգրավել գործարար սոցմրցության մեջ և նրանց ջանքերն ուղղել իններորդ հնգամյակի պլանների կատարմանը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հուլիսյան (1975 թ.) պլենումը հանգամանորեն քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ Հայաստանի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման վերաբերյալ որոշման կենսագործման ասպարեզում հանրապետության կուսկազմակերպությունների խնդիրները։ Դրանց լուծման համար հարկավոր է մոբիլիզացնել կադրերի, բոլոր կոմունիստների եռանդն ու ունակությունները և արժանավայել գործերով դիմավորել ՍՄԿԿ XXV համագումարը։

# ՄԵԾ ՇԱՐԺՄԱՆ ԱՎԱՆԳԱՐԴՈՒՄ

ՀՐ. Ս. ՀՈՎՍԵՓՅԱՆ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՍԻ ՇՐՋԿՈՄՈՒՄ ԵՄ։ Խոսում ենք տեղի առաջավոր տնտեսություններից մեկի, նրա կուսկազմակերպության դրական աշխատանքի փորձը լուսաբանելու մասին։ Բոլորը նախապատվությունը տալիս են Արբաթ գյուղի Գայի անվան կոլտնտեսությանը, որը ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման ասպարեզում առաջընթաց լուրջ քայլեր է արել և ժամկետից մեկ տարի շուտ կատարել գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների ավելացման հնգամյա պլանը։

— Կուսկազմակերպությունը մարտունակ է, բազմաճյուղ տնտեսությունը ղեկավարում է գործիմացությամբ, իրագործում այնպիսի միջոցառումներ, որոնք ապահովում են համագումարի առաջադրած խնդիրների հաջող լուծումը, իսկ կոմունիստները շարունակ գտնվում են մեծ շարժման ավանգարդում,— ավելացնում է կուսշրջկոմի առաջին քարտուղար Ա. Հովհաննիսյանը։

Արբաթում ծանոթանում եմ կոլտնտեսության կուսկազմակերպության գործունեությանը, ամենից առաջ հետաքրքրվում, թե ՍՄԿԿ XXIV համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում կոմունիստներից ով ինչպե՞ս է ապրել տնտեսության հոգսերով, նրանցից յուրաքանչյուրն ի՞նչ է անում արժանավայել դիմավորելու կուսակցության առաջիկա XXV համագումարը, կուսկազմակերպությունը ինչպե՞ս է ղեկավարում ու կազմակերպում սոցիալիստական մրցությունը, գլխավորում կոմունիստների պայքարը գյուղատնտեսական արտադրության ինտենսիվ զարգացումն ապահովելու համար։

Երկու տասնամյակ առաջ Վ. Հակոբյանն առանց երկմտելու որոշեց իր տեղը կյանքում. կամովին ու ոգևորված գնաց աշխատելու կոլտնտեսության տրակտորա-մեքենայական հավաքակայանում։ Գարունը բացվելուն պես նստեց տրակտորի ղեկին, ակոսեց հողը, ցանք կատարեց, հետո հավաքեց բերքը։ Անցել են տարիներ, բայց կուսակցության զինվորը վերստին աշխատում է անսպառ եռանդով ու նվիրումով, պարտքի կատարման բարձր զգացումով։ Այժմ նա ղեկավարում է կոլտնտեսության մեքենայական հավաքակայանը, անձնական օրինակ ցույց տալիս մյուսներին։ Տեխնիկայի լավ գիտակ է, նախաձեռնող, նորի ու առաջավորի ջերմ պաշտպան, երիտասարդ մեխանիզատորների դաստիարակ։ Կոլտնտեսությունն ունի տարբեր մակնիշի 14 տրակտոր, ցանքի մշակության ու բերքահավաքի մեծ քանակությամբ տեխնիկա ու սարքավորումներ, որոնց խնամքը մշտապես գտնվում է Վրույրի ուշադրության կենտրոնում։ Նա մտահոգվում է կոլտնտեսականների առօրյա հոգսերը թեթևացնելու, բանջարանոցային կուլտուրաների միջշարային տարածությունների մշակության աշխատանքները մեքենայացնելու մասին։ Գործն այնպես է կազմակերպում, որ յուրաքանչյուր հեկտար լինի լիարժեք և 2—3 անգամ մշակվի մեքենայով։

Այդ ամենի շնորհիվ մեծ չափով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, մոտ մեկուկես-երկու անգամ իջել արտադրանքի ինքնարժե-

քը: Հիրավի, խրախուսելի շատ գործերի հեղինակ է Վ. Հակոբյանը: Ահա թե ինչու կոլտնտեսության կոմունիստներն ակնածանքով են խոսում նրա մասին, մեծ վստահություն տածում հմուտ ու փորձառու մեխանիզատորի նկատմամբ, ամեն անգամ նրան ընտրում կուսկազմակերպության քարտուղար: Կուսակցությունը և կառավարությունը բարձր են գնահատել Վ. Հակոբյանի անձնվեր ու անբասիր աշխատանքը և նրան պարգևատրել Լենինի շքանշանով:

Այժմ, երբ կոլտնտեսության արտադրությունը դրվել է գիտական հիմքերի վրա, արմատավորվում են աշխատանքի կազմակերպման առաջավոր եղանակներ, առավել կարևոր նշանակություն են ստանում կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխումը, կադրերի ընտրությունը: ՍՄԿԿ XXIV համագումարից հետո կուսկազմակերպությունը, կոլտնտեսության վարչության հետ միասին, լրջորեն զբաղվել է այդ հարցով, արտադրական ճյուղերում ղեկավար աշխատանքի ուղարկել կազմակերպչական բավարար ունակություններ ունեցող կադրեր, վճռական տեղամասերն ամրապնդել կոմունիստներով: Այժմ 34 կոմունիստներից 25-ն անմիջականորեն աշխատում են նյութական բարիքների արտադրության ոլորտում: Կուսկազմակերպությունը մշտապես զբաղվել է արտադրության մարդկանց ակտիվության ու նախաձեռնության զարգացմամբ, ուժեղացրել պահանջկոտությունը նրանց նկատմամբ: Արտադրության կազմակերպիչներից և կոմունիստներից յուրաքանչյուրը գործիմացությամբ է միջամտում տնտեսության առջև ծառացած խնդիրների լուծմանը, գյուղատնտեսական մթերքների արտադրության շեշտակի ավելացմանը:

Կուսկազմակերպության քարտուղարը գովեստով է խոսում № 2 բրիգադի բրիգադավար, կոմունիստ Վ. Կարապետյանի մասին: Վերջինս օժտված է կազմակերպական ունակությամբ: Կուսբյուրոյի ու կոլտնտեսության վարչության օգնությամբ կարճ ժամանակում նրա ղեկավարած բրիգադան դարձել է առաջավոր: Վանիկը բրիգադայի անդամների մտերիմ ընկերն է, հաշվի է առնում նրանց կարծիքը: Բրիգադայում ամրապնդվել է աշխատանքային կարգապահությունը, որը հնարավորություն է ընձեռել դաշտային յուրաքանչյուր աշխատանք կատարել ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում ու բարձր որակով: Բրիգադավարն առանձնակի ուշադրություն է նվիրում արտադրության մեջ գիտության նվաճումների, առաջավոր փորձի տարածմանն ու արմատավորմանը: Նա կոլտնտեսությունում առաջիններից էր, որ պոմիդորի սածիլներն աճեցրեց թաղարային եղանակով, ներդրեց պոմիդորի բարձր բերքատու սորտեր:

Բրիգադայում գործարար բնույթ է կրում սոցիալիստական մրցությունը. բանջարաբույծները գարնան սկզբից մինչև ուշ աշուն աշխատում են հաստատակամորեն, պայքարում ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու համար: Այդ ասպարեզում լայն գործունեություն է ծավալում կուսակցական խումբը, որը ղեկավարում է Տ. Մուրադյանը: Կուսխումբը բարձրացնում է ո՛չ միայն կոմունիստների, այլև բրիգադի 52 կոլտնտեսականների պատասխանատվությունը գործերի վիճակի համար, հոգ է տանում մարդկանց ակտիվության զարգացման մասին, ամենօրյա քաղաքական-մասսայական աշխատանք ծավալում նրանց շրջանում: Եվ պատահական չէ, որ բրիգադան հնգամյակի բոլոր տարիներին աճեցրել է բարձր բերք. վաղահաս կարտոֆիլի հեկտարի միջին բերքատվությունը հասցրել է 244, պոմիդորինը՝ 600, խաղողինը՝ 125 ցենտների կամ զգալիորեն ավելի, քան նախատեսված է պլանով: Բերքատվության բարձրացման, այդ մթերքների համախառն արտադրության հնգամյա առաջադրանքը չորս տարում կատարելու համար կոմունիստ բրիգադավարը հաստատվել է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի մասնակից և պարգևատրվել արծաթե մեդալով: Այժմ ևս բրիգադան քայլում է մրցության ավանգարդում: Այստեղ լայն թափ է ստացել ՍՄԿԿ առաջիկա համագումարի պատվին ծավալված մրցությունը: Կուսակցության XXV համագումարն արժանավայել դիմավորելու համար ծավալված սոցիալիստական մրցության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը նոր խանդավառություն է առաջացրել բրիգադայի անդամների շրջանում: Նրանք կուսակցության մեծ համաժողովը դիմավորում են հնգամյակի եզրափակիչ տարվա սոցիալիստական պարտավորությունները զգալիորեն գերակատարած:



Հնգամյակի տարիներին գոհացուցիչ են եղել նաև կոմունիստ Վլ. Զաքարյանի ղեկավարած բրիգադայի ցուցանիշները: Նա նույնպես բարձր բերքի վարպետ է, արտադրության լավ կազմակերպիչ: Մասնակցելով համամիութենական սոցիալիստական մրցությանը՝ բանջարաբույծներն ու կարտոֆիլագործները ստանձնել են բարձր պարտավորություններ և տոգորվել խոսքը գործի վերածելու, հնգամյակը ժամկետից շուտ ավարտելու վճռականությամբ: Նրանք հավատարիմ են մնացել իրենց խոստմանը և կարտոֆիլի ու բանջարեղենի համախառն արտադրության հնգամյակի բնագծերը նվաճել չորս տարում:

Կուսակցության XXIV համագումարը երկրի առջև ծառացած գյուղատնտեսության կարևորագույն պրոբլեմներից մեկը համարեց անասնապահության հետագա վերելքը և խնդիր դրեց լրիվ մոբիլիզացնել այդ ասպարեզում կոլտնտեսությունների ու սովխոզների ունեցած ռեզերվները: Եվ անասնապահության առաջընթացի հարցը դարձավ կոլտնտեսության վարչության ու կուսկազմակերպության հոգածության առարկան: Այդ ճյուղի զարգացման վերաբերյալ ընդունված որոշումների կատարման գործում զգալի ներդրում ունի կաթնապրանքային ֆերմայի վարիչ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր, կոմունիստ Պ. Երիցյանը: Նա իններորդ հնգամյակի սկզբից հոգ է տարել անասնապահության վարման կուլտուրան բարձրացնելու մասին. նրա ակտիվ միջամտությամբ գոմերում տեղակայվել են ավտոխմոցներ, գոմաղբի հեռացման սկրեպերային հարմարանքներ: Կուսկազմակերպության և կոլտնտեսության վարչության օգնությամբ ամրապնդվել է կերի բազան, հանրային հոտում ավելացել մայրական կազմը, բարելավվել անասունների ցեղը: Անասունների խնամքի ու կերակրման ճիշտ կազմակերպման, ներքին ռեզերվների գործադրման շնորհիվ հնգամյակի անցած չորս տարում, նախատեսված 2.300-ի փոխարեն, կովերի միջին կաթնատվությունը կազմել է 3.500—3.800 կիլոգրամ, իսկ այս տարի կանցնի 4.000 կիլոգրամից: Կթվորուհի Արուս Մանուկյանը ամեն մի կովից ստացել է 3.800—4.000 կիլոգրամ, կաթ համախառն արտադրության անձնական հնգամյա պլանը գերակատարել մոտ ութ տոննայով: Առաջավոր կթվորուհու աշխատանքն աննկատ չի մնացել. նրա կուրծքը զարդարում են Հոկտեմբերյան հեղափոխության և «Պատվո նշան» շքանշանները:

Վստահված գործի նկատմամբ կոմունիստների պատասխանատվության ըստ ամենայնի բարձրացումը, խոսքի ու գործի միասնության ապահովումը կուսբյուրոն համարում է իր ամենօրյա խնդիրը, որի պատշաճ լուծումը նպաստում է նրանց ակտիվության ու ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը: Այստեղ չկա կոմունիստ, որը չքայլի իններորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված սոցմրցության ավանգարդում: Տնտեսության հաջողությունների մեջ մեծ ներդրում ունեն անասնաբույժ Վ. Սարգսյանը, մեխանիզատորներ Կ. Ղուկասյանը, Ռ. Կարապետյանը, Խ. Զաքարյանը, բանջարաբույծներ Ս. Եղիազարյանը, Փ. Անտոնյանը, Յու. Հասանովը, Սոնյա Հովհաննիսյանը, Կ. Փանոսյանը և ուրիշներ: Մրցելով իրար հետ, նրանք դաշտում, այգում և ֆերմայում ամենուրեք աշխատում են եռանդով, ապահովում կոմունիստի իրենց ավանգարդային դերը, գործուն մասնակցություն ցույց տալիս նյութական բարիքների ստեղծմանը:

Կուսկազմակերպությունը և նրա բյուրոն լուրջ ուշադրություն են հատկացնում սոցմրցության կազմակերպմանն ու ծավալմանը: Մրցության կազմակերպման հարցերը համակողմանիորեն քննարկվում են ինչպես կուսակցական, այնպես էլ կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում, կոնկրետ միջոցներ են ձեռնարկվում՝ հետևողականորեն կիրառելու մրցության լենինյան սկզբունքները՝ հրապարակայնությունը, արդյունքների համադրման, փորձի գործնական կրկնման հնարավորությունը, բարոյական և նյութական խրախուսանքը: Արտադրության բոլոր ճյուղերի կոլեկտիվներն ընդգրկված են սոցմրցության մեջ, արտադրական բարձր ար-

դյունքներ ունեցող, հանրային միջոցները խնայողաբար օգտագործող, երկարամյա և անբասիր աշխատողների համար սահմանվել են «Վաստակավոր կոլտնտեսական», «Պատվավոր կոլտնտեսական», ինչպես նաև «Առաջին կարգի կթվոր-անասնապահ», «Երկրորդ կարգի կթվոր-անասնապահ» կոչումներ: Ընդ որում, առաջին երեք կոչումներն ստացողների ամսական վարձատրությունը բարձրանում է 10, իսկ «երկրորդ կարգի կթվոր-անասնապահ» վարպետինը՝ 5 տոկոսի չափով: Այդ պատվավոր կոչմանն արդեն արժանացել են Կ. Վահանյանը, Ռ. Հովհաննիսյանը, Փ. Անտոնյանը, Ա. Մկրտչյանը, Ա. Մանուկյանը, Դ. Ալիյանը, Կ. Սարգսյանը:

Կուսկազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը հույժ կարևորում են առաջավոր փորձի տարածումն ու արմատավորումը: Այդ գործի պատասխանատվությունը կուսբյուրոն դրել է կոլտնտեսության մասնագետների վրա, որոնց օգնում են արհմիութենական կազմակերպությունը, ագիտատորներն ու քաղինֆորմատորները, կուլտուրայի տունը և պատի թերթը: Այս տարի ուսումնասիրվել ու տարածվել է մեխանիզատոր Ա. Հարությունյանի, կթվորուհի Ա. Մանուկյանի, բանջարաբույծ Հ. Արշակյանի աշխատանքի ուսանելի փորձը:

Առաջավոր փորձի արմատավորման գործում ևս կոմունիստները հանդես են բերում մեծ ակտիվություն: Այսպես, կաթնամթերքային ֆերմայի վարիչ Պ. Երիցյանը, լինելով Հրազդանի շրջանի Մեղրաձոր գյուղի կոլտնտեսությունում, մոտիկից ծանոթացել է խոշոր եղջերավոր անասունների մատղաշների ինտենսիվ աճեցման ու բտման մեթոդին, 1973 թվականից իրենց մոտ կիրառել է այդ առաջավոր եղանակը: Դա էլ շրջադարձային նշանակություն է ունեցել մսի արտադրության ավելացման համար. 1974 թ. այդ եղանակով աճեցրած անասունները մթերակայան են ուղարկվել 330—350-ական կգ կենդանի քաշով:

Բանջարանոցային կուլտուրաների մշակությունն առաջավոր եղանակով կազմակերպելու, պոմիդորի բարձր բերքատու սորտեր արմատավորելու ասպարեզում անուրանալի է կոլտնտեսության գյուղատնտեսը, կոմունիստ Ս. Մխիթարյանի ավանդը: Նրա ջանքերով 43 հեկտար տարածության վրա աճեցվում են Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության բանջարաբոստանային կուլտուրաների փորձասելեկցիոն կայանում ստեղծված պոմիդորի «Արաքս—322», «Մասիս—212», «Էջմիածին—260» և «Կարինե—338» վաղահաս սորտերը, որոնց միջին բերքատվությունը հեկտարից անցնում է 700 ցենտներից:

Կուսկազմակերպության աշխատանքի նման ոճը, անտարակույս, բարեբար ազդեցություն է թողել կոլտնտեսության գործունեության վրա: Դրա պերճախոս վկայությունը տնտեսական բարձր արդյունքներն են. հնգամյակի յուրաքանչյուր տարին եղել է արգասաբեր. չորս տարում կոլտնտեսությունը կատարել է գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների ավելացման հնգամյա պլանը: Այդ մասին գոհունակությամբ է պատմում կոլտնտեսության երիտասարդ նախագահ Խ. Պետրոսյանը:

— Հաղթանակի բերկրանքը առաջինը ճաշակել են մեր կոլտնտեսականները. հինգ տարվա համար պլանավորված 1.150-ի փոխարեն նրանք չորս տարում արտադրել են 2.195 տոննա կարտոֆիլ, դրա շնորհիվ կրկնակի չափով գերակատարվել է նաև մթերման առաջադրանքը: Հաջողությամբ կազմակերպելով 68 հեկտար բանջարանոցային կուլտուրաների մշակությունը, ամեն տարի գերազանցել ենք յուրաքանչյուր հեկտարի բերքատվության պլանը, որը հնարավորություն է ընձեռել հնգամյա պլանով սահմանված 8.750-ի դիմաց չորս տարում արտադրել 12.563 տոննա բանջարեղեն:

Հաջողություններն զգալի են անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների ավելացման բնագավառում: Գերակատարել ենք անասունների բոլոր տեսակների գլխաքանակի աճի հնգամյա պլանները: Մսի և կաթի արտադրության հնգամյակի բնագծերը նվաճել ենք չորս տարում:

Մեզ մոտ, ճիշտ է, այգեգործությունը անհամեմատ երիտասարդ ճյուղ է,— ունենք 10 հեկտար խաղողի և 20 հեկտար պտղատու այգի,— բայց հաջողություններն ակնառու են: Այս տարի խաղողի այգիների ամեն մի հեկտարից ստացանք 120 ցենտներ բերք:

Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, կոլտնտեսությունում որոշակի քայլեր են արվել մթերքների ինքնարժեքն իջեցնելու, անարտադրողական ծախսերը կրճատելու, արտադրության արդյունավետությունն ապահովելու ասպարեզում: Այդ ամենի շնորհիվ աճում են եկամուտները, բարձրանում է կոլտնտեսականների կենսամակարդակը: Հինգ տարում, օրինակ, կոլտնտեսությունը պետք է ստանար 2 մլն 600 հազար ռուբլու դրամական եկամուտ, բայց չորս տարում այն հասցրեց 3 միլիոն 46 հազարի:

Այսօր կոլտնտեսությունը տեսակարար մեծ կշիռ ունի շրջանում, նրա համբավը դուրս է եկել հանրապետության սահմաններից: Կոլտնտեսականների հայրենանվեր աշխատանքը բարձր է գնահատվում կուսակցության ու կառավարության կողմից: 1970 թ. կոլտնտեսությունն արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի լենինյան հոբելյանական պատվոգրին, հնգամյակի անցած չորս տարիներին պարգևատրվել է ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության ու ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ դրոշով և դրամական առաջին կարգի մրցանակով, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի դիպլոմով, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի առաջին կարգի դիպլոմով ու «Մոսկվիչ» ավտոմեքենայով, ինչպես նաև մի շարք անգամ արժանացել հանրապետական և շրջանային փոխանցիկ դրոշների: Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ լավագույն արդյունքների հասնելու համար արտադրության 10 առաջավորներ պարգևատրվել են ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով, 6-ը՝ ԺՏՆՑ-ի մեդալներով: Վերջերս մի նոր պատվի ու փառքի արժանացան արբաթցիները: Գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում ձեռք բերած նվաճումների և հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար կոլտնտեսությունը պարգևատրվեց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրով:

Ոգևորիչ են բազմաճյուղ կոլտնտեսության զարգացման հեռանկարները: Գոհունակությամբ ընդունելով մեր հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումը, կուսկազմակերպությունը, կոլտնտեսության վարչությունը գործուն միջոցառումներ են իրականացնում գյուղատնտեսական մթերքների արտադրության տեմպերն արագացնելու, տնտեսության բարձր արդյունավետությունն ապահովելու համար: Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվելու բանջարաբուծության զարգացմանը: Որոշվել է 35—40 հեկտար տարածությունից տարեկան ստանալ երկու բերք, 1971—1975 թթ. համեմատությամբ, նոր հնգամյակում բանջարեղենի համախառն արտադրությունն ավելացնել 1.200—1.500 տոննայով: Հնգամյակում տնտեսության եկամտաբեր ճյուղը կդառնա նաև այգեգործությունը. 30 հեկտարով կընդարձակվեն պտղատու և խաղողի այգիները, խաղողի ու պտղի արտադրությունը կաճի երկու անգամ: Կապահովվի անասնապահության ինտենսիվ զարգացումը, մեծապես կբարձրանա հանրային հոտի մթերատվությունը. կովերի տարեկան միջին կաթնատվությունը կհասցվի 4.200 կիլոգրամի:

Նոր պլաններն ու կանխագծումներն իրականացնելու համար կուսկազմակերպությունը վճռական պայքար է ծավալել: Այդ պայքարի մեջ իր ուժը, եռանդն ու փորձն է ներդնում յուրաքանչյուր կոմունիստ:

Ահա այսպիսի նվաճումներով են ընթանում Արբաթ գյուղի կոլտնտեսության կոմունիստները և աշխատավորները դեպի կուսակցության առաջիկա համագումարը: Դա ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրների, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան և հուլիսյան պլենումների որոշումների կենսագործման ճանապարհին Գայի անվան կոլտնտեսության կուսկազմակերպության, կոլտնտեսության վարչության, բոլոր կոմունիստների և աշխատավորների անձնվեր աշխատանքի լավագույն արգասիքն է:

# ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆԸ

**Ռ. Ա. ՄԻՆԱՍՅԱՆ**
ՀԿԿ Ղափանի շրջկոմի
առաջին քարտուղար

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ կոմունիստական դաստիարակության նպատակով կուսկազմակերպությունների ծավալած գաղափարական-քաղաքական գործունեության մեջ կարևոր տեղ ունի աշխատանքային դաստիարակությունը: Դաստիարակչական աշխատանքի բովանդակությունը, ձևերն ու մեթոդները մեծ չափով պայմանավորվում են մեր հասարակության զարգացման ամեն մի կոնկրետ փուլում նրա առաջընթացն ապահովող սոցիալ-տնտեսական խնդիրների բնույթով, ընդգրկման մասշտաբներով և հաջող լուծման համար պահանջվող անհրաժեշտ նախադրյալներով:

Կոմունիստական կուսակցությունը միշտ էլ իր գաղափարական գործունեության առաջնահերթ խնդիրն է համարել մասսաների կոմունիստական դաստիարակությունը, նոր հասարակարգ կառուցողների հոգևոր կերպարի ձևավորումը:

Կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում գաղափարական աշխատանքը հետզհետե ավելի հզոր գործոն է դառնում: Որքան ավելի բարձր է հասարակության անդամների գիտակցականությունը, այնքան ավելի լրիվ ու լայնորեն է ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, աշխատանքի կոմունիստական ձևերի, մարդկանց միջև նոր հարաբերությունների զարգացման ասպարեզում, այնքան ավելի արագորեն ու հաջողությամբ են լուծվում կոմունիզմի կառուցման խնդիրները:

Կուսակցության XXIV համագումարը, որոշելով ժամանակակից փուլում սոցիալիստական էկոնոմիկայի, մեր երկրի հասարակական և քաղաքական կյանքի հետագա զարգացման գլխավոր ուղղությունները, առաջադրել է պատմական հսկայական կարևորություն ունեցող մի այնպիսի խնդիր, ինչպիսին է արդի պայմաններում գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական միացումը տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ: Այդ մեծ ու բարդ խնդրի լուծման շահերը պահանջում են ո՛չ միայն առավելագույն արդյունավետությամբ օգտագործել տնտեսական գործոնները, այլև կուսակցական-կազմակերպական ու գաղափարական-դաստիարակչական աշխատանքներն այնպես կազմակերպել, որ հնարավոր լինի լիովին բացահայտել ու գործողության մեջ դնել սոցիալիստական հասարակարգի ընդերքում եղած մեծ հնարավորությունները, առավել լրիվ չափով բացահայտել ու գործի դնել սովետական մարդու՝ որպես կոմունիզմ կառուցողի մարտիկի, հիանալի հատկանիշները:



Կուսակցության XXIV համագումարը սոցիալիստական էկոնոմիկայի հետագա զարգացման գլխավոր պայմանը համարել է հանրային արտադրության արդյունավետության համակողմանի բարձրացումը, որն արդի պայմաններում ապահովվում է արտադրության մեջ նորագույն տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման, աշխատանքի և արտադրության հստակ կազմակերպման, կառավարման սիստեմի կատարելագործման, աշխատանքի արտադրողականության անընդհատ աճի և այլ գործոնների շնորհիվ:

Արտադրության մեջ մուտք գործող նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի պայմաններում ավելի բարձր պահանջներ են ներկայացվում բանվորներին և ինժեներատեխնիկական աշխատողներին: Այժմ նրանց անհրաժեշտ է պրոֆեսիոնալ պատրաստության, կրթության ու կուլտուրական զարգացածության ավելի բարձր մակարդակ: Զէ՛ որ այսօրվա բանվորի աշխատանքն ինտելեկտուալ տարրերի հագեցածության և պրոֆեսիոնալ որակավորման տեսակետից ընդհուպ մոտենում է ինժեներականին: Կուսակցության XXIV համագումարից հետո ՍՄԿԿ Կենտկոմն իր մի շարք որոշումներում, մասնավորապես «Բելոռուսիայի կուսակցական կազմակերպությունում գաղափարական կադրերի ընտրության և դաստիարակության ասպարեզում տարվող աշխատանքի մասին» հայտնի որոշման մեջ գիտական խորությամբ մշակել և ցույց է տվել ժամանակակից պայմաններում աշխատավորական կոլեկտիվների ակտիվության բարձրացման հիմնական ձևերն ու մեթոդները:

Մեր ժողովրդատնտեսական պլանների կատարման բախտը, վերջին հաշվով, վճռվում է արտադրական փոքր ու մեծ կոլեկտիվներում, դրանցում են ամրապնդվում ու զարգանում սովետական ժողովրդի աշխատանքային փառավոր ավանդույթները, ձևավորվում բանվորների և կոլտնտեսականների նոր, սոցիալիստական հատկանիշները, կոմունիստական վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ: Հաշվի առնելով այս ամենը՝ կուսակցության Ղափանի շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն իրենց ամենօրյա պրակտիկ գործունեության ընթացքում հատուկ ուշադրություն են նվիրում արտադրական կոլեկտիվների անդամների աշխատանքային դաստիարակությանը, դիտելով այն դաստիարակչական ողջ համակարգի հետ սերտ միասնության մեջ:

Կոլեկտիվներում դաստիարակչական աշխատանքը տարվում է մի շարք ուղղություններով, տարբեր ձևերով ու մեթոդներով: Այստեղ հարկ ենք համարում արծարծել դրանցից միայն մի քանիսը, որոնք ավելի են նպաստում աշխատանքային դաստիարակության հաջողությանը:

Մեծ նշանակություն տալով արտադրության մարդկանց գաղափարական դաստիարակության գործին, նրանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորմանը՝ շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները մասսաների շրջանում բազմակողմանիորեն պրոպագանդում են մարքս-լենինյան ուսմունքը, ցույց տալիս կապիտալիստական սիստեմի ու ապրելակերպի նկատմամբ սոցիալիստականի արմատական առավելությունները, պարզաբանում մեր երկրի ներքին և արտաքին քաղաքականության փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը, աշխատավորների վճռական դերը առաջադրված խնդիրների լուծման գործում: Ղափան և Քաջարան քաղաքներում, բանավաններում ու գյուղերում, ձեռնարկություններում ու արտադրամասերում կազմակերպվում են մարքսիստական փիլիսոփայության, քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի առանցքային հարցերի վերաբերյալ դասախոսություններ, զեկուցումներ ու զրույցներ: Այդ նպատակին են ծառայում նաև հասարակական հիմունքներով գործող ժողովրդական համալսարաններն ու բանվորական ակումբները: Վերջին տարիներին այս կարևոր գործին մեծ չափով օգնում են նաև մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղի, հանրապետական մի շարք գիտահետազոտական ինստիտուտների գիտաշխատողները, ինչպես նաև գրողներն ու արվեստագետները:

Կուսակցական-գաղափարական աշխատանքի կազմակերպման գործում նոր երևույթ են կուսշրջկոմի, հանրապետական ու միութենական մի շարք ինստիտուտների նախաձեռնությամբ կազմակերպված գիտական և գիտա-պրակտիկ կոնֆերանսները, որոնց մասնակցում են արտադրության առաջավորներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, պրոպագանդիստներ, քաղինֆորմատորներ: Դրանք մեծ չափով նպաստում են աշխատավորների մտահորիզոնի ընդլայնմանը, նրանց կողմից կոմունիստական շինարարության խնդիրների համընդհանուր նշանակության խոր ըմբռնմանը:

Կոլեկտիվներում աշխատանքային դաստիարակության նպատակով մշակված միջոցառումների հաջողությունը հիմնականում պայմանավորված է սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվ գործունեությամբ, կոլեկտիվների արտադրական և հասարակական կյանքի բոլոր բնագավառների վրա նրանց ունեցած ներգործության ուժով: Դրա համար էլ կուսշրջկոմը առանձնակի ուշադրություն է նվիրում սկզբնական կազմակերպությունների գործունեության բարելավմանը, նրանց դերի ու ազդեցության ուժեղացմանը, արտադրական պլանների կատարման, նոր տեխնիկայի ներդրման գործում և հասարակական աշխատանքներում կոմունիստների առաջատար դերի ապահովմանը:

Հաշվի առնելով յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների բնույթն ու առանձնահատկությունները, կոլեկտիվների կազմակերպվածության, նրանց անդամների պրոֆեսիոնալ որակավորման աստիճանը, արտադրական հարցերի լուծման, մրցության կազմակերպման և կոլեկտիվի ուժերի մոբիլիզացման ասպարեզում ձեռք բերած փորձը՝ շրջկոմն իր պլենումներում ու բյուրոյի նիստերում պարբերաբար քննարկում է առանձին սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությանը վերաբերող հարցեր, նրանց ուշադրությունը հրավիրում թերությունների վերացման վրա, խրախուսում նոր նախաձեռնությունները և ամեն կերպ աջակցում դրանց զարգացմանը: Այսպես, նախօրոք կատարված մանրամասն ու խոր ուսումնասիրությունից հետո շրջկոմի պլենումներում անդրադարձել ենք իններորդ հնգամյակի առաջադրանքների կատարման վիճակին Քաջարանի պղնձամոլիբդենային և Ղափանի պղնձահանքային կոմբինատներում: Այդ առթիվ ընդունված որոշումներին ծանոթացրել ենք հարստացուցիչ ֆաբրիկաների, բոլոր արտադրամասերի և բրիգադաների կոլեկտիվներին: Բանվորական ժողովներում ամենայն ուշադրությամբ հաշվի են առնվել բանվորների և մասնագետների կարծիքներն ու առաջարկությունները, համատեղ միջոցառումներ մշակվել առաջադրված խնդիրները լուծելու համար: Այդ ամենի շնորհիվ հաջողությամբ հաղթահարվել են ծագած դժվարությունները և լեռնահանքային արդյունաբերության զարգացման գործում ձեռք բերվել էական նվաճումներ:

Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձամոլիբդենային կոմբինատի կոլեկտիվը հնգամյակի անցած չորս տարում ձեռնարկության նախագծային հզորությունը գերազանցել է ավելի քան քսան տոկոսով, տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով գերակատարել հնգամյակի անցած բոլոր տարիների պլանային առաջադրանքները: Գործերի վիճակը արմատապես բարելավվում է նաև Ղափանի պղնձահանքային կոմբինատում:

Շրջկոմի բյուրոյի նիստերում լսել ենք հաշվետվություններ «Հայէլեկտրալույս» միավորման մասնաճյուղում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, Երևանի «Էլեկտրոն» գործարանի մասնաճյուղի նորաստեղծ կոլեկտիվում՝ աշխատանքային ավանդույթների դաստիարակության, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների առնչությամբ Ղափանի ավտոձեռնարկության և Զանգեզուրի երկրաբանական-հետախուզական արշավախմբի կոլեկտիվներում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի վիճակի, Ղափանի և Քաջարանի պրոֆտեխուսումնարաններում երիտասարդ բանվորական կադրերի պատրաստման վերաբերյալ: Նման ուսումնասիրություններն ու քննարկումները և այդ կապակցությամբ մշակված միջոցառումների հետևողական իրականացումը նպաստում են կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների գործունեության ակտիվացմանն ու նրանց կողմից կոլեկտիվներում տարվող դաստիարակչական աշխատանքի բարելավմանը: Դրանով բարձրանում է մարդկանց պատասխանատվությունն ընդհանուր գործի համար, ավելի մեծ թվով բանվորներ են ընդգրկվում աշխատանքային և արտադրական կարգապահության խախտումների- անտնտեսվարության ու թափթփվածության, մեր հասարակությանը խորթ երևույթների դեմ մղվող պայքարում:



Աշխատավորական կոլեկտիվներում կուսկազմակերպությունների դաստիարակչական գործունեության գլխավոր առանցքը արտադրության մարդկանց աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքով համակելն է:

Արդի պայմաններում սոցիալիստական մրցության և դրա բարձրագույն ձևի՝ կոմունիստական աշխատանքի համար շարժման նպատակն է ո՛չ միայն ավելացնել թողարկվող արտադրանքը, այլև ներդնել գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները, կատարելագործել արտադրական պրոցեսները, արդյունավետ օգտագործել բանվորական ուժը, մեքենաներն ու սարքավորումները, տնտեսել հումքը, էներգիան ու նյութերը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, բարձրացնել դրա որակը: Այսպիսով, կոմունիստական աշխատանքի համար ծավալված պայքարի նպատակն է լուծել հանրային արտադրության արդյունավետության բարձրացման խնդիրները: Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն ընթացիկ հնգամյակի տարիներին, հաշվի առնելով յուրաքանչյուր կոլեկտիվի արտադրական առանձնահատկությունները, ամեն կերպ ձգտել են ինչպես հազարավոր մարդկանց անհատական, այնպես էլ կոլեկտիվների մրցությունը ծառայեցնել վերոհիշյալ նպատակների իրականացմանը: Այսպես, շրջանի լեռնահանքային ձեռնարկությունների կոլեկտիվներում սոցիալիստական պարտավորությունների կետերը հիմնականում վերաբերում են հորատանցման արագության մեծացման, լեռնային մարմինների շահագործման սիստեմների և հանքաքարի հարստացման տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, արտադրության կառավարման առանձին օղակներում կիսաավտոմատ և ավտոմատ սարքերի կիրառման, էլեկտրաէներգիայի, վառելիքի, նյութերի խնայողության և արտադրանքի որակի բարելավման հարցերին: «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման, Երևան քաղաքի «Էլեկտրոն» գործարանի մասնաճյուղերի կոլեկտիվների պարտավորություններում հիմնական շեշտը դրվել է հաստոցների, սարքավորումների և ավտոմատ գծերի արտադրողականության բարձրացման, արտադրանքի թողարկման ավելացման և որակի բարելավման համար տեխնիկական նոր լուծումների որոնման, նոր արտադրատեսակների արտադրության յուրացման և այդ նպատակով ավելի կատարյալ տեխնոլոգիական ռեժիմների ուսումնասիրման ու արմատավորման վրա:

Կուսկազմակերպությունները հետևում են, որպեսզի այդ պարտավորությունները կատարվեն անշեղորեն, նպաստեն հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը: Ղափանի պղնձահանքային կոմբինատում արմատապես կատարելագործվել է հանքային մարմինների միջհարկային մշակման համակարգը, որը հնարավորություն է ընձեռել ստորգետնյա հորիզոններում կիրառել ամենաժամանակակից բարձրարտադրողական հորատման հաստոցներ, հորատանցքերի լիցքավորման և պայթեցման մեքենայացված նոր, առաջավոր եղանակ և այդ միջոցով երեք անգամ ավելացնել արդյունահանվող հանքաքարի քանակը:

Իրականացնելով կուսակցության XXIV համագումարի պահանջները՝ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները լուսաբանում են սոցիալիստական մրցության, կոմունիստական աշխատանքի համար ծավալված շարժման ընթացքը, ապահովում դրանց արդյունքների լայն հրապարակայնությունը, օգնում մրցության մասնակիցների, բրիգադաների և արտադրամասերի կոլեկտիվների նախաձեռնությունների, նրանց աշխատանքի առաջավոր փորձի արմատավորմանը: Շրջկոմի բյուրոյի որոշմամբ շրջանում լայն տարածում է ստացել սոցիալիստական աշխատանքի հերոս Գ. Մանասյանի

# ՀՍՍՀ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՆԵՐԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

Վ. Ե. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ

*Արդյունաբերությունը ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերից մեկն է, այն բնութագրվում է տեխնիկական հագեցվածության բավական բարձր մակարդակով։ Վերջին տասնամյակների ընթացքում նրա համակողմանի զարգացումն ուղեկցվել է ճյուղային կառուցվածքի առաջադիմական փոփոխություններով, ճյուղային և տերիտորիալ տեղաբաշխման միակողմանիության զգալի հաղթահարումով, ձեռնարկությունների մասնագիտացումով, որակական ցուցանիշների ու աշխատուժի օգտագործման բարելավումով։*

*Հայկական ՍՍՀ արդյունաբերությունը զարգանում է արդի գիտատեխնիկական առաջընթացի տենդենցներին համապատասխան։ Ներկայումս մեր հանրապետության արդյունաբերության մեջ ստեղծվել է այնպիսի ճյուղային կառուցվածք, որ բնորոշ է արդյունաբերական տեսակետից զարգացած երկրներին։*

*Լ. Ի. Բրեժնևը, խոսելով ՍՍՀՄ արդյունաբերության զարգացման մասին, նշում է. «...մենք վերցրել ենք հիմնական ճյուղերի որակական վերակառուցման, նորագույն տեխնիկայի արմատավորման, աշխատանքի արտադրողականության նշանակալի բարձրացման կուրս։ ...Մենք շարունակում ենք համառատակամորեն պայքարել առավել կատարյալ տեխնիկայի կիրառման և նրա առավել հմուտ օգտագործման համար, աշխատանքի ավելի լավ կազմակերպման և կարգապահության համար, նյութերի և էներգիայի խնայողության համար»* (Լենինյան կուրսով, հ. 4, էջ 554)*։ Այս ամբողջությամբ վերաբերում է նաև ՀՍՍՀ արդյունաբերությանը։*

*Սովետական Հայաստանի արդյունաբերության արագ զարգացման շնորհիվ 1973 թ. այն տվել է հանրապետության հասարակական ամբողջական արդյունքի 67 և ազգային եկամտի 66 տոկոսը։ 1940—1973 թթ. արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացել է 25,6 անգամ։ Դա ձեռք է բերվել հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, արդյունաբերության մասշտաբների ընդլայնմամբ, դրանում զբաղվածության ավելացմամբ։ Բավական է նշել, որ այդ ընթացքում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 4,6, իսկ զբաղվածությունը՝ 6,7 անգամ։ 1973 թ. ՀՍՍՀ արդյունաբերության մեջ զբաղված էր շուրջ 295 հազար մարդ։ Դա ամենաբարձր մակարդակն է ժողովրդական տնտեսության ցանկացած ճյուղի համեմատությամբ։*

*1972 թ. Հայկական ՍՍՀ ամբողջ արդյունաբերության մեջ, 1959 թ. համեմատությամբ, մեքենայացված աշխատանքներում ընդգրկված բանվորների թվաքանակն ավելացել է շուրջ 81 տոկոսով։ Այն հատկապես բարձրացել է արդյունաբերության առաջատար ճյուղերում։ Այսպես, նույն ժամանակամիջոցում, մեքենաշինության ու մետաղամշակման մեջ մեքենայացված աշխատանքներում ընդգրկված բանվորների թվաքանակն աճել է 4,3 անգամ, քիմիական արդյունաբերության մեջ՝ 115 տոկոսով և այլն։ Հատկանշական է, որ այդ տարիներին ավտոմատներն ու ավտոմատ ապարատներն սպասարկող բանվորների թիվն ավելացել է մի քանի անգամ։*



*Սակայն այս բոլորով հանդերձ հանրապետության արդյունաբերության զարգացումը բնութագրվել է որոշ միակողմանիությամբ, հաճախ արդյունաբերության նոր ճյուղեր ստեղծելիս անտեսվել են հանրապետության ապահովվածությունը համապատասխան հումքով և էներգիայով, բնակլիմայական պայմանները, բնակչության զարգացման դեմոգրաֆիական առանձնահատկությունները, աշխատուժի առավել արդյունավետ օգտագործման խնդիրները, բնակչության տեղաբաշխումն ու խտությունը և այլն, մեքենայացված աշխատանքներում ընդգրկված բանվորների թվաքանակի բացարձակ աճը չի ուղեկցվել նրա հարաբերական բարձր աճով, արտադրության առանձին ճյուղերի զարգացումը չի ապահովել դրա հետագա մասնագիտացման խորացումը։*

*ՀՍՍՀ արդյունաբերության զարգացման որոշ միակողմանիությունն իր արտահայտությունն է գտել վերջին տարիների ընթացքում քիմիական արդյունաբերության, գունավոր մետաղաձուլության, մեքենաշինության և թեթև արդյունաբերության մի շարք ճյուղերի էներգատար և քիչ աշխատատար առանձին արտադրությունների ստեղծման մեջ, որն ըստ էության չի համապատասխանել ինչպես այդ ճյուղերի մասնագիտացման հետագա խորացման, այնպես էլ հանրապետության աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման շահերին։ Հաճախ աշխատատար ճյուղերի ստեղծումը չի զուգակցվել որակյալ աշխատուժի պրոբլեմի լուծման հետ։*

*ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան և հուլիսյան պլենումներում ամենայն լրջությամբ բացահայտվեցին ՀՍՍՀ արդյունաբերության վերընթացում տեղ գտած թերությունները, նշվեցին կոնկրետ միջոցառումներ դրանք հաղթահարելու համար։ Պլենումի որոշումների լույսի ներքո առանձնահատուկ կարևորություն է ստանում արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության ռեզերվների բացահայտման, գնահատման և օգտագործման հարցերի լուսաբանումը։*

*Բանն այն է, որ հանրապետության արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը վերջին տաս-տասներկու տարիներին չեն համապատասխանում հնգամյա պլաններով նախատեսվող տեմպերին և զգալիորեն զիջում են ՍՍՀՄ արդյունաբերության աշխատանքի արտադրողականության միջին աճին։ Ըստ հնգամյա պլանների ՀՍՍՀ արդյունաբերության մեջ նախատեսվել է աշխատանքի արտադրողականության 5,5—6 տոկոս միջին տարեկան աճ, մինչդեռ 1961—1973 թթ. կազմել է 4,15 (ՍՍՀՄ-ում՝ 5,35)։ Առանձնապես դանդաղ է աճել 1961—1965 թթ. (միջին տարեկանը եղել է ընդամենը 3 տոկոս, իսկ ՍՍՀՄ արդյունաբերության մեջ՝ ավելի քան 4,5 տոկոս)*[1]*։ Եթե ՍՍՀՄ արդյունաբերության մեջ 1966—1970 թթ. աշխատանքի ֆոնդազինվածության աճի յուրաքանչյուր մեկ տոկոսին բաժին է ընկել մեկ տոկոս աշխատանքի արտադրողականություն, ապա ՀՍՍՀ-ում համապատասխան ցուցանիշը ավելի ցածր է, թեև 1966—1973 թթ. հանրապետության արդյունաբերության մեջ ֆոնդազինվածության միջին տարեկան աճը շատ ավելի բարձր է եղել (6,3 տոկոս)։*

[1] *Այս և հաջորդ էջերում բերված հաշվարկները (ինչպես նաև ուղղակի տվյալները) կատարվել են* «Народное хозяйство СССР в 1972 г.», М. 1973, «Народное хозяйство СССР в 1972 г.», М. 1974, *վիճակագրական տարեգրքերի* «Итоги Всесоюзной переписи населения в 1970 г.» т. 1, М. 1972 г.; т. 3, М. 1972 т. *հրատարակությունների,* «Население СССР» М., 1974 *տեղեկագրքի* «Труд в СССР» М., 1968, «Армянская ССР за 50 лет», Е. 1970 г., «Армения в единой семье народов СССР», Е., 1972, «Народное хозяйство Арм. ССР в 1972 г.», Е., 1973 г., «Народное хозяйство Арм. ССР»—за 1973 год» Е., 1974, «Труд в Армянской ССР» Е., 1970, «Промышленность Армянской ССР» Е., 1973, *վիճակագրական ժողովածուների համապատասխան տվյալների հիման վրա։*

ՀՍՍՀ արդյունաբերության մեջ արտադրանքի համեմատաբար բարձր ֆոնդատարողունակությունը և աշխատանքի արտադրողականության դանդաղ տեմպերը բացատրվում են մի շարք օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոններով: Որոշ էտապներում առաջին պլան է մղվել արդյունաբերության էքստենսիվ զարգացումը: Արդյունաբերության ճյուղային կառուցվածքը և արտադրանքի տեսականին ենթարկվել են հաճախակի փոփոխման, դանդաղ է ընթացել արտադրության, հատկապես օժանդակ արտադրության մեքենայացումը, աշխատանքի ու արտադրության անբավարար կազմակերպման պատճառով արտադրական կարողությունները ու աշխատուժը ռացիոնալ չեն օգտագործվել, բացակայել է արտադրամասերի, հաստոցների տարբեր խմբերի կարողությունների միջև անհրաժեշտ պլանային համամասնությունը, ձգձգվել են սարքավորման տեղակայման պլանային ժամկետները և այլն:

Իրոք, ինչո՞ւ պետք է արդյունաբերության (ինչպես նաև ամբողջ ժողովրդական տնտեսության) մեջ ֆոնդազինվածությունը և մեքենազինվածությունը չուղեկցվեին աշխատանքի արտադրողականության համապատասխան աճով:

Ի պատասխան հարցադրման, ամենից առաջ պետք է առանձնացնել արդյունաբերության զարգացման էքստենսիվ և ինտենսիվ գործոնների ազդեցությունը նրա աճման ընթացքի վրա: Հետպատերազմյան շրջանում ելնելով առանձին միութենական հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակները համահարթելու անհրաժեշտությունից, Հայկական ՍՍՀ-ում խիստ ավելացան արդյունաբերության ընդլայնման համար նախատեսվող կապիտալ ներդրումները: Մեր հանրապետության հանքային ու հումքային արժեքավոր ռեսուրսների հետագա իրացումը և այդ բազայի վրա գունավոր մետաղաձուլության ու քիմիական արդյունաբերության այն ճյուղերի զարգացումը, որոնք ունեն խիստ մասնագիտացված բնույթ և կարևոր մասնակցություն՝ համամիութենական մասշտաբով աշխատանքի բաժանման և կոոպերացման մեջ, պահանջեցին ոչ միայն ընդլայնել և վերակառուցել գոյություն ունեցող օբյեկտները, այլև կառուցել նոր արդյունաբերական ձեռնարկություններ: Այդ տարիներին բնակչության կազմում աշխատանքային տարիքի մարդկանց բարձր մակարդակը, ուստի և՝ հանրային արտադրության մեջ նրանց զբաղվածությունն ապահովելու անհրաժեշտությունը, թելադրեցին ստեղծել ու զարգացնել մեքենաշինության, թեթև արդյունաբերության և բնակչությանը սպասարկող մի շարք աշխատատար ճյուղեր: Այդ ամենը ավելի քան մեկ ամբողջ տասնամյակ (1960—1972 թթ.) պայմանավորեցին արտադրության աճի էքստենսիվ գործոնի գործողության շրջանակների ընդլայնումը: Համախառն արտադրանքի արտադրության մեջ պակասեց աշխատանքի արտադրողականության բաժինը: Այդ ընթացքում արդյունաբերության մեջ աշխատողների թվի միջին տարեկան աճը (6,05 տոկոս) գերազանցեց աշխատանքի արտադրողականության աճի տեմպերին (4,25 տոկոս): Իսկ 1961—1965 թթ. այդ տարբերությունն ավելի ցցուն էր, այդ ընթացքում աշխատողների թվի միջին տարեկան աճի տեմպերը կազմեցին 6,9 տոկոս, այսինքն՝ աշխատանքի արտադրողականության համապատասխան ցուցանիշը գերազանցեցին 2,3 անգամ: Կապիտալ ներդրումների բարձր տեմպերի պայմաններում նոր շինարարության մեծ մասշտաբները սահմանափակեցին գործող ձեռնարկություններում հին սարքավորումները նորերով փոխարինելու, արտադրության բոլոր օղակներում ձեռքի աշխատանքն արտամղելու հնարավորությունները: Արտադրության մասշտաբների ընդլայնման պայմաններում որոշ արտադրություններում ստեղծվեց աշխատուժի պակաս: Արտադրության էքստենսիվ աճը բնորոշ դարձավ հանրապետության արդյունաբերության բոլոր հիմնական ճյուղերին: Այդ մասին լավ պատկերացում է տալիս ստորև բերվող աղյուսակը:

Բավական է ասել, որ 1961—1965 թթ. արդյունաբերության համախառն արտադրանքի աճի ավելի քան 65,4 տոկոսը, մեքենաշինության ու մետաղամշակման արտադրանքի աճի 75,4, թեթև արդյունաբերության՝ 77, ապակու և հախճապակու արդյունաբերության 79 տոկոսը տեղի ունեցավ բանվորների թվաքանակի ավելացման հաշվին: Սննդի, փայտամշակման արդյունաբերու-



թյան մեջ արտադրության մասշտաբներն ընդլայնվեցին միայն նոր աշխատողներ ընդգրկելու միջոցով:

Արտադրության ծավալի, աշխատանքի արտադրողականության և աշխատողների թվի աճը ՀՍՍՀ արդյունաբերության մի շարք ճյուղերում 1961—1973 թթ. (տոկոսներով)

| Արդյունաբերության ճյուղերը | 1961—1965 | | | 1966—1973 | | |
|---|---|---|---|---|---|---|
| | համախառն արտադրանք | աշխատանքի արտադրողականություն | աշխատողների թիվ | համախառն արտադրանք | աշխատանքի արտադրողականություն | աշխատողների թիվ |
| Ամբողջ արդյունաբերությունը (առանց կոլտնտեսային արդյունաբերության) | 158,6 | 115,6 | 137,2 | 209,2 | 146,7 | 142,8 |
| Այդ թվում՝ | | | | | | |
| Քիմիական և նավթաքիմիական արդյունաբերություն | 237,8 | 153,3 | 155,1 | 177,9 | 142,2 | 125,1 |
| Մեքենաշինություն և մետաղամշակում | 216,0 | 115,9 | 186,4 | 305,6 | 177,8 | 171,9 |
| Շինանյութերի արդյունաբերություն | 181,5 | 149,9 | 121,1 | 197,4 | 152,7 | 129,3 |
| Թեթև արդյունաբերություն | 122,1 | 104,4 | 117,0 | 198,7 | 149,5 | 132,9 |
| Սննդի արդյունաբերություն | 125,9 | 101,7 | 123,8 | 172,4 | 141,4 | 121,9 |

1966—1973 թթ. աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերի մեջ նկատված որոշ աշխուժության հետևանքով հնարավոր է դառնում նրա հաշվին ապահովել համախառն արտադրանքի աճի 55 տոկոսից ավելին (1966—1970 թթ.՝ 54,1 տոկոս, 1971 թ.՝ 69,2 տոկոս, 1972 թ.՝ 55,8 տոկոս, 1973 թ.՝ 57,9 տոկոս):

Փաստերը միաժամանակ ցույց են տալիս, որ Հայաստանի արդյունաբերության էքստենսիվ զարգացումը ուղեկցվել է ինտենսիվ զարգացման հետ: Հայտնի է, որ Կ. Մարքսը վերարտադրությունը համարում էր էքստենսիվ, եթե ընդլայնվում է միայն արտադրության դաշտը, երբ կիրառվում են ավելի արդյունավետ արտադրամիջոցներ: Հայաստանում թե գործող ճյուղերի ընդլայնումը, և թե նորերի ստեղծումը էքստենսիվ բնույթ է կրել այնքանով, որ այն կատարվել է նոր լրացուցիչ աշխատուժի ընդգրկման հիման վրա: Բայց գործող ձեռնարկություններում այն ուղեկցվել է արտադրական կարողությունների վերակառուցման և արդիականացման հետ, իսկ ընդլայնումը կատարվել է ավելի կատարելագործված հիմքի վրա: Ինչ վերաբերում է նոր ճյուղերին, ապա նրանց ստեղծումն իրականացվել է նոր արտադրական կարողություններ գործարկելու և նոր աշխատուժ ընդգրկելու միջոցով: Ուստի, արտադրության էքստենսիվ ընդլայնումն ըստ էության ուղեկցվել է ինտենսիվ զարգացման հետ:

Այդուհանդերձ, ՀՍՍՀ արդյունաբերությունն իր զարգացման ընթացքում ֆոնդազինվածության, մեքենազինվածության և էլեկտրազինվածության աճով միշտ էլ զիջել է Միության միջին ցուցանիշին, թեև հանրապետության արդյունաբերության մեջ հիմնական ֆոնդերը միշտ էլ իրենց աճի տեմպերով գերազանցել են Միության արդյունաբերության միջին ցուցանիշը: Այսպես, 1961—1972 թվականներին հանրապետության արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերի միջին տարեկան աճը կազմել է 12,1, Միության արդյունաբերության մեջ՝ 9,6 տոկոս, այնինչ բանվորների թվի միջին տարեկան աճի տեմպերը համապատասխանաբար կազմել են 5,8 և 2,8 տոկոս:

Միաժամանակ պետք է նկատել, որ մեկ աշխատողի հաշվով համախառն արտադրանքի արտադրության ավելի ցածր մակարդակով բնութագրվող ճյու-

ղերում (մեքենաշինություն) հիմնական ֆոնդերն ավելացել են ավելի արագ տեմպերով, քան այն ճյուղերում (սննդի, թեթև, փայտամշակման), որոնք մեկ աշխատողի հաշվով թողարկում են ավելի շատ արտադրանք։ Դա իր հերթին հանգեցրել է ամբողջ արդյունաբերության մասշտաբով աշխատանքի արտադրողականության անբավարար աճին։ Իսկ եթե նկատի առնվի նաև այն, որ մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության մեջ հիմնական ֆոնդերն աճել են ավելի ցածր (միջին տարեկանը հավասարվում է 5,42-ի), իսկ աշխատողների թիվը ավելի բարձր (միջին տարեկան աճը հավասարվում է 3,2-ի) տեմպերով, քան արդյունաբերության միջինն է, ապա աշխատանքի արտադրողականության դանդաղ աճի պատճառը ավելի պարզ կդառնա։ Արդյունաբերության մեջ հիմնական ֆոնդերի ճյուղային կառուցվածքի տեղաշարժերը բացասական ազդեցություն են ունեցել նաև նրա ֆոնդահատույցի վրա, քանի որ հիմնական ֆոնդերի կառուցվածքում բարձրացել են այն ճյուղերի տեսակարար կշիռը, որոնք բնութագրվում են հիմնական ֆոնդերի յուրաքանչյուր մեկ ռուբլու հաշվով համախառն արտադրանքի ավելի ցածր մակարդակով։

Այդ միտումը հավանաբար որոշ չափով կպահպանվի նաև առաջիկայում, թեև դրան հակառակ գործող միտումը՝ քիչ ֆոնդատար արտադրությունների զարգացումը հանրապետության համար ավելի բնորոշ կդառնա։

Նախընթաց տարիներին հանրապետության արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության աճի վրա ոչ պակաս ազդեցություն է ունեցել նաև արդյունաբերության ընդլայնված վերարտադրության այդ շրջանին բնորոշ առանձնահատուկ գիծը, որը հատուկ է ինդուստրացմանը։ Հիմնական ֆոնդերի վերը բերված մեծ աճը, այդ ընթացքում, գերազանցապես ապահովեց նրա պասիվ տարրերի ավելացումը, որն անկասկած, ուղեկցվեց ձեռքի աշխատանքի մեքենայացման մակարդակի բարձրացման հետ։

Քննարկվող ժամանակաշրջանում աշխատանքի արտադրողականության թույլ աճի պայման է հանդիսացել նաև այն, որ տարբեր ժամանակներում գործարկվող արտադրական կարողությունները չեն օգտագործվել իրենց նախագծային կարողությամբ։

Արդյունաբերության գրեթե բոլոր ճյուղերում բազմաթիվ նորակառույց և ընդլայնվող ձեռնարկություններ դեռևս յուրացնում էին նոր առաջադիմական արտադրանքների բազմաթիվ տեսակների արտադրությունը։ Չմոռանանք, որ հիմնականում այդ տարիներին շահագործման հանձնվեցին միջին և փոքր քաղաքների բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք ոչ միայն ինժեներա-տեխնիկական բարձրորակ մասնագետների, այլև որակյալ բանվորների խիստ կարիք էին զգում։ Մինչդեռ հանրային արտադրության մասշտաբների ընդլայնումը, որ ուղեկցվում էր աշխատանքի արտադրողականության դանդաղ աճով, պահանջեց ավելի շատ աշխատանքային ռեսուրսներ, քան նրա իրական ռեզերվներն էին։ Հանրային արտադրության ընդլայնումը չէր ուղեկցվում արտադրության տեխնիկական հագեցվածության բարձր աճով։ Այդ պատճառով էլ ազատ աշխատատեղերի մեծ մասը զբաղեցվեցին գյուղատնտեսությունից և տնային տնտեսությունից ազատված անձանցով, որոնք մեծ մասամբ չունեին մասնագիտություն և համապատասխան փորձ։ Նշենք նաև, որ 60-ական թվականների կեսերին նվազեց աշխատանքային տարիքի բնակչության տեսակարար կշիռը։

ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտում կատարված ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ 1976—1985 թթ. բնակչության կազմում աշխատանքային տարիքի բնակչությունը զգալիորեն ավելանալու պայմաններում 1980—1985 թթ. բնակչության ընդհանուր թվի մեջ կլինեն էական փոփոխություններ։

Ուստի, կարելի է ենթադրել, որ ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունն առավել ակտիվ աշխատանքային տարիքի (25—44 տարեկաններ) բնակչության տեսակարար կշռի բարձրացման շնորհիվ ավելի արագ կաճի 1985 թ. հետո ընկած ժամանակաշրջանում։ Անկասկած, չպետք է անտեսել, որ հասարակական արտադրության կոմպլեքսային



մեքենայացման և ավտոմատացման համեմատ, աշխատանքի արտադրողականության բարձրացման մեջ այդ գործոնի դերը կնվազի։ Բայց տվյալ դեպքում նշանակություն ձեռք կբերի հանրային արտադրության մեջ այդ տարիքի բնակչության ընդգրկվածության բարձր մակարդակը։

Աշխատանքի արտադրողականության տեմպերի վրա որոշակի ազդեցություն են ունեցել արդյունաբերության ճյուղային կառուցվածքի փոփոխությունները։ Եթե ՀՍՍՀ ողջ արդյունաբերության մեջ մեկ աշխատողին ընկնող համախառն արտադրանքն ընդունենք մեկ (1972 թ. տվյալներ), ապա քիմիական արդյունաբերության մեջ այն կկազմի ավելի քան 1,4, մեքենաշինական ու մետաղամշակման արդյունաբերության մեջ՝ 0,66, շինանյութերի արդյունաբերության մեջ՝ 0,70, սննդի արդյունաբերության մեջ՝ 2,54, թեթև արդյունաբերության մեջ՝ 0,83, ապակու-ճենապակու, հախճապակու արդյունաբերության մեջ՝ 0,54, փայտամշակման արդյունաբերության մեջ՝ 0,65 և այլն։ Մեկ աշխատողին ընկնող համախառն արտադրանքի բաժինը մեծ է արտադրության երկու ճյուղերում՝ քիմիական և սննդի արդյունաբերության։ Ճիշտ է, ամբողջ արդյունաբերության մեջ բարձրացել է քիմիական արդյունաբերության տեսակարար կշիռը (միայն 1961—1967 թթ.), բայց սննդինը զգալիորեն իջել է։ Խիստ ավելացել է այդ տեսակետից ցածր ցուցանիշով բնութագրվող մեքենաշինության արտադրանքի բաժինը, որը ազդել է ամբողջ արդյունաբերության մեջ մեկ աշխատողին ընկնող համախառն արտադրանքի ցուցանիշի վրա։ Ամբողջ արդյունաբերության մեջ այդ ճյուղի համախառն արտադրանքի բաժինը 1960 թ. 14,3 տոկոսից 1973 թ. բարձրացել է 24,8, իսկ սննդի արդյունաբերությանը՝ 27,5-ից իջել է 22,6 տոկոսի։ Մինչդեռ մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության մեջ մեկ աշխատողի հաշվով թողարկվում է մոտ 3,8 անգամ ավելի քիչ համախառն արտադրանք, քան սննդի արդյունաբերության մեջ։

Հանրապետության բնակչության բնական և մեխանիկական աճման բարձր տեմպերը, որակյալ աշխատուժի առկայությունը, այսուհետև ևս կպահանջեն արտադրության առավել աշխատատար և բարձր որակավորում պահանջող ճյուղերի հետագա ընդլայնում։

Աշխատանքի արտադրողականության հետագա աճի մեծ ռեզերվ է օժանդակ բնույթի աշխատանքների և օժանդակ արտադրամասերի մեքենայացման աստիճանի բարձրացումը և դրանով իսկ, արտադրանքի ընդհանուր աշխատատարության իջեցումը։ Հաճախ արտադրության մասշտաբների չհիմնավորված ընդլայնումը հանգեցնում է անցանկալի հետևանքների։ ՀՍՍՀ արդյունաբերության էքստենսիվ զարգացման պատճառով արտադրական անձնակազմի մեջ օժանդակ բանվորների տեսակարար կշիռը 1965 թվականի 40,9 տոկոսից 1969 թ. բարձրացավ 41,8 տոկոսի։ Նրանց բացարձակ թիվն ավելացավ 27,1 տոկոսով։ Պատճառը օժանդակ արտադրամասերի և օժանդակ աշխատանքների մեքենայացման դեռևս ցածր աստիճանն է, որը բացասաբար է անդրադառնում նաև հիմնական արտադրամասերի կարողությունների օգտագործման վրա։

Օժանդակ բանվորների թիվը նվազել է միայն մեքենաշինության և մետաղամշակման մեջ։ 1969 թ. արտադրության այս ճյուղում օժանդակ բանվորները կազմում էին 40 տոկոս, 1965 թ. 45,8 տոկոսի փոխարեն։

Օժանդակ աշխատանքների և օժանդակ արտադրամասերի մեքենայացման ցածր աստիճանի հետևանքով, հանրապետության ամբողջ արդյունաբերության մեջ զուտ ձեռքի աշխատանքներում զբաղվածների տեսակարար կշիռը քիչ է իջել։ 1962 թվականին նրանք կազմում էին բանվորների ընդհանուր թվաքանակի 51,1 տոկոսը, իսկ 1972 թ. 47,9 տոկոսը։ Ըստ որում 1962 թ. համեմատ 1972 թ. ձեռքի աշխատանքներում զբաղված բանվորների բացարձակ թիվը ավելացել է շուրջ 50 տոկոսով։

Ձեռքի աշխատանքներում զբաղվածների թիվն առանձնապես ավելացել է մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության մեջ, գունավոր մետալուրգիայի, շինանյութերի, թեթև արդյունաբերության և այլ ճյուղերում։

Այսպիսով, հեռանկարում Հայաստանի արդյունաբերության մեջ աշխա-

տանքի արտադրողականության բարձրացման ամենակարևոր գործոններից մեկը ձեռքի աշխատանքի և արտադրության օժանդակ պրոցեսների մեքենայացումն է, դրանցում ընդգրկված բանվորների որակավորման աստիճանի հետագա բարձրացումը:

Աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման համար չափազանց կարևոր է արտադրության բոլոր օղակներում ընդգրկված բանվորների էլեկտրազինվածության ավելացումը: Հաշված է, որ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության մոտ կեսը ապահովում է նրա էլեկտրազինվածությունը, իսկ մեքենաշինության մեջ էլեկտրազինվածության աճի յուրաքանչյուր մեկ տոկոսը, միջին հաշվով, հանգեցնում է չորս տոկոս աշխատանքի արտադրողականության բարձրացման: Մինչդեռ, եթե ՍՍՀՄ արդյունաբերության մեջ էլեկտրաէներգիայի սպառման տեմպերը զգալիորեն գերազանցում են աշխատողների թվի ավելացման տեմպերը, ապա ՀՍՍՀ արդյունաբերության մեջ 1961—1971 թթ. դրանք երկու դեպքում էլ կրկնապատկվել են:

Այսպես, ՀՍՍՀ արդյունաբերության մեջ էլեկտրազինվածության 1,4 տոկոս միջին տարեկան աճը ուղեկցվել է բանվորների 6,1 տոկոս միջին տարեկան աճով: Մեքենաշինության և մետաղամշակման մեջ այն համապատասխանաբար կազմել է 1,1 և 10,5 տոկոս: Արդյունաբերության հետագա զարգացման շահերը պահանջում են սպառվող էլեկտրաէներգիայի տեմպերի առաջանցիկ աճ՝ աշխատողների թվի համեմատությամբ:

Ֆոնդահատույցի բարձրացման կարևորագույն գործոններից մեկը գործող արտադրաֆոնդերի օգտագործման արդյունավետության բարձրացումն է: Այդ տեսակետից չափազանց էական նշանակություն ունի հերթափոխության գործակցի բարձրացումը (մասնավորապես առաջիկա տասնամյակում՝ կապված աշխատանքային տարիքի բնակչության խիստ ավելացման հետ), որը Հայաստանի արդյունաբերության (հատկապես մեքենաշինության) մեջ խիստ ցածր է: 1973 թ. մեքենաշինության մեջ այն կազմում էր 1,23 (հիմնական արտադրամասերում՝ 1,29): Դա վկայում է, որ արդյունաբերական ձեռնարկություններում արտադրության միջոցներն օրվա ընթացքում իրականում օգտագործվում են 7—8 ժամ: Հերթափոխության գործակցի բարձրացումը արտադրական կարողությունների էքստենսիվ օգտագործման բարելավման կարևորագույն պայմաններից է: Այն կարելի է ապահովել ոչ միայն աշխատանքային տարիք թևակոխող բնակչության, այլև, ինչպես հիմնական, այնպես էլ օժանդակ արտադրապրոցեսների մեքենայացման շնորհիվ ազատվող աշխատուժի վերաորակավորման միջոցով:

Հերթափոխության գործակցի բարձրացման խնդրին առանձնահատուկ նշանակություն տրվեց ՍՄԿԿ XXIV համագումարում: Համագումարին տված զեկուցման մեջ ընկ. Ա. Ն. Կոսիգինը ընդգծեց, որ «Մեքենաշինության մեջ խոշոր ռեզերվ կլինի հերթափոխության գործակցի բարձրացումը: ՍՍՀՄ պետպլանի հաշվարկներով, դրա շնորհիվ կարելի է լրացուցիչ արտադրել 7—8 միլիարդ ռուբլու արտադրանք և տնտեսել մոտավորապես 6—7 միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ»:

Ներկայումս երկու կամ երեք հերթափոխությամբ աշխատանքի կազմակերպումը արտադրական կարողությունների էքստենսիվ օգտագործման գործակիցը բարձրացնելու հարցի մեկ կողմն է: Հետզհետե ավելի կարևոր նշանակություն է ստանում արտադրության տարբեր օղակների տեխնիկական հագեցվածության և արտադրության պրոցեսների մեքենայացման աստիճանի տարբերությունների հետևանքով արդյունաբերության մի շարք ճյուղերի կառուցվածքային ստորաբաժանումներում տեղ գտած որոշակի անհամամասնությունների հաղթահարումը: Դա ամենից առաջ իր արտահայտությունն է գտնում հիմնական և նախապատրաստական արտադրամասերի, ինչպես նաև հիմնական արտադրամասերի հոսքային գծերում տեղակայված հաստոցների



տարբեր խմբերի թողունակության անհամապատասխանության մեջ: Այդ պատճառով էլ առանձին արտադրամասերում ու տեղամասերում անբավարար են օգտագործվում արտադրական կարողություններն ու աշխատուժը: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այդ պատճառով ձեռնարկություններում ներհերթափոխային կորուստները հասնում են աշխատաժամանակի ֆոնդի 15—20 տոկոսին: Դրա հետ մեկտեղ արդյունաբերական ձեռնարկություններում ավելանում են ամբողջօրյա պարապուրդները, որոնք գլխավորապես կապված են հիվանդությունների և ինքնակամ բացակայությունների հետ:

Նորագույն տեխնիկան ցանկացած արդյունք կարող է տալ միայն այն ժամանակ, երբ անհրաժեշտ համամասնությամբ է տեղակայվում արտադրական բոլոր օղակներում: Այնինչ ՀՍՍՀ արդյունաբերական մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների մեխանիկական արտադրամասի հոսքային գծերում տեղակայված տարատեսակ հաստոցները տարբերվում են իրենց կարողություններով: Շատ ձեռնարկություններում, օրինակ, հոսքային գծերում տեղակայված հաստոցների կարողությունների միջև որոշ «համամասնություն» ստեղծելու նպատակով ավելացվում է ցածր արտադրողական հաստոցների թիվը: Վերջիններիս համար սահմանվում են եռահերթ, իսկ ավելի բարձր արտադրողական հաստոցների համար՝ երկհերթ աշխատանքային ռեժիմ: Նույնիսկ աշխատանքի նման ռեժիմի պայմաններում բարձր արտադրողականություն ունեցող հաստոցները մեկ հերթափոխության ընթացքում արտադրական ծրագիրը կատարում են 3—4 ժամում, իսկ ավելի ցածր արտադրողական հաստոցները՝ մի քանի հերթափոխի ընթացքում:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր գործոն է սարքավորումների պարկի առաջադիմական տեխնոլոգիական կառուցվածքի ապահովումը՝ նրանցում դարբնոցա-մամլիչային մեքենաների և ձուլման սարքավորումների բաժինն ավելացնելու միջոցով: Դա հնարավորություն կտա նեղացնել մեխանիկական մշակման ոլորտը և մասերի ձևափոխության կենտրոնը տեղափոխել արտադրության նախապատրաստական փուլը: Դա, ինչպես նաև ծանր քաշի և քիչ արտադրողական հաստոցների արտադրության փոխարինումը առավել առաջադիմական տեսակներով, կհանգեցնի վիթխարի չափերի հասնող աշխատուժի տնտեսմանը ոչ միայն հաստոցների արտադրության, այլև բուն մեխանիկական մշակման ընթացքում՝ կրճատելով այնտեղ կենդանի և առարկայական աշխատանքի ծախսումները:

Հեռանկարում աշխատանքի արտադրողականության, ուստի և նրա ֆոնդազինվածության և ֆոնդահատույցի բարձրացման շահերը թելադրում են յուրաքանչյուր կոնկրետ ժամանակահատվածում ստեղծել նաև որոշակի նորմալ հարաբերակցություն կապիտալ ներդրումների և գործարկվող հիմնական ֆոնդերի աճի տեմպերի միջև: ՀՍՍՀ արդյունաբերության մեջ արտադրության առանձին ճյուղերում ներկայումս նման համապատասխանության բացակայությունը բացատրվում է արդյունաբերական օբյեկտների շինմոնտաժային և շահագործման աշխատանքների ձգձգումով, միաժամանակ մի շարք օբյեկտների շինարարության վրա միջոցները փոշիացնելով: Այդ պատճառով էլ գոյանում է մեծ խզվածք կոնկրետ ժամանակահատվածում կատարվող կապիտալ ներդրումների և գործարկվող հիմնական ֆոնդերի ու արտադրական կարողությունների աճի տեմպերի միջև:Բանն այն է, որ տվյալ դեպքում տարիներ շարունակ հիմնական ֆոնդերում մարմնացած աշխատանքը չի ապահովում անհրաժեշտ հատույցը և հիմնական ֆոնդերի ուշ գործարկումը ակամա վերածվում է տեխնիկական առաջադիմությունը կաշկանդող գործոնի:

Արդի գիտատեխնիկական առաջընթացի բնորոշ կողմերից մեկը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական վերազինումն է, որն իր հերթին պայմանավորում է աշխատուժի բաշխումն ու վերաբաշխումը ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի ու նրա ստորաբաժանումների միջև: Դա տեղի է ունենում ոչ միայն արտադրության առանձին օղակների զարգացման տարբեր տեմպերի, այլև նորագույն տեխնիկայի արմատավորման, արդյունաբերության միանգամայն նոր ճյուղեր ու ենթաճյուղեր ստեղ-

ծելու շնորհիվ: Նորաստեղծ ստորաբաժանումները արտադրության ընդլայնվող օղակները որակյալ աշխատուժի հիմնական պահանջը բավարարում են ոչ թե, կամ ոչ այնքան հանրային արտադրություն նոր մուտք գործած աշխատուժի, որքան գործող ձեռնարկություններից ազատվող աշխատուժի հաշվին: Առանց դրա արտադրության ընդլայնվող օղակները գործել չեն կարող: Այս հարցը չափազանց կարևոր նշանակություն ունի Հայաստանի համար, քանի որ գործող արտադրությունների հիման վրա, նորերի առաջացումը այստեղ ավելի ցայտուն բնույթ է կրում: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ միջին հաշվով, ամեն ոք, իր ողջ կյանքի ընթացքում աշխատատեղը փոխում է 5—10 անգամ[1]:

Բավական է ասել, որ եթե 1960 թ. արդյունաբերության մեջ աշխատանքից ազատվողների միջին տարեկան մեծությունը կազմում էր ՀՍՍՀ արդյունաբերության աշխատողների 38 տոկոսը, իսկ նոր ընդունվողները՝ 48 տոկոսը, ապա 1970 թ. աշխատողների բացարձակ թվի 86 տոկոս աճի պայմաններում, այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմեցին 38 և 46 տոկոս: Աշխատանքից ազատվողների մեջ մեծ տոկոս են կազմում աշխատանքից ինքնակամ ազատվողները, այսինքն՝ մեծ է աշխատուժի հոսունությունը: Իսկ դա չի բխում ոչ միայն տվյալ ձեռնարկության, այլ շատ հաճախ հասարակության և անհատի շահերից: ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ՀՍՍՀ մեքենաշինական ձեռնարկություններում աշխատանքից ինքնակամ ազատված բանվորները մինչև նոր աշխատանքի տեղավորվելը կորցնում են 65—70 օրացուցային օր: Այսպիսի բանվորների մոտ մինչև աշխատանքից ազատվելը արտադրողականությունն իջնում է երեք-չորս տոկոսով: Ցածր արտադրողականությամբ են նրանք աշխատում նաև նոր աշխատանքի սկզբնական շրջանում: Նույնիսկ արձակուրդից վերադարձած բանվորը իր մինչարձակուրդային աշխատանքի ռիթմը վերականգնում է մոտ մեկ շաբաթվա ընթացքում:

Գիտատեխնիկական հեղափոխության արդի դարաշրջանում արդյունաբերության դերը մեծանում է նաև նրա մասնագիտացման ու տնտեսական ինտեգրացիայի շնորհիվ: Միութենական ամեն մի հանրապետության էկոնոմիկան ՍՍՀՄ էկոնոմիկայի մի առանձին մասն է: Նրանց ո՛չ միայն առանձին ձեռնարկությունների, այլև տնտեսության առանձին ճյուղերի առաջընթացը, ստեղծված ճյուղային համակարգում հումքային ու աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության մակարդակը կանխորոշվում է ամեն մի հանրապետության արտաքին տնտեսական փոխադարձ կապերի աստիճանով, ողջ երկրի, ինչպես նաև միջազգային մասշտաբով աշխատանքի կազմակերպմանն ունեցած նրանց մասնակցությամբ:

[1] **В. Шляпентох,** Социология для всех, М., 1970, стр. 109.

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

*

## ԲԵՂՈՒՆ ԵՎ ԻՄԱՍՏԱԼԻՑ ԿՅԱՆՔ

**(Մ. Ի. Կալինինի ծննդյան 100-ամյակի առթիվ)**

*



Նա լենինյան տիպի երևելի գործիչ էր, ու նրա կյանքը իսկական լեգենդի է նման, անչափ հետաքրքրական ու խորապես ուսանելի: Որքան դժվարին ուղի է անցել, այնքան էլ՝ հերոսական ու փառավոր: Կյանքի դառնությունը ճաշակած գեղջուկ է եղել ու զրկանքներից անպակաս բանվոր. անձնուրաց հեղափոխականի վտանգալից ու տագնապաշատ օրեր է անցկացրել և բանտախցի խավարն ու աքսորականի երկար ու ձիգ ձանձրալի ճամփան տեսել. ողջ ուժերն ու եռանդը նվիրաբերել է սոցիալիստական հեղափոխության հաղթանակին և պետության ղեկավարի մշտազբաղ ու հույժ պատասխանատու պաշտոնը վարել. հազար ու մի թելերով կապվել է աշխատավոր զանգվածների հետ և տիվ ու գիշեր նրանց մասին հոգացել: Այսպիսին է եղել Միխայիլ Իվանովիչ Կալինինը, որի գիտակցական ողջ կյանքը ծառայել է ժողովրդի երջանկության, աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծման, բարգավաճման և հզորացման շահերին:

Անուրախ է եղել Միխայիլ Իվանովիչ Կալինինի մանկությունը, մշտական ծանր կարիքի մեջ: Ծնվել է Տվերի (այժմ Կալինին) նահանգի Կորչևսկի գավառի Վերխնայա Տրոիցա գյուղում, 1875-ի նոյեմբերի 7-ին: Բնակավայրը սակավահող էր, ու նրա բնակիչները գնում էին քաղաք՝ հայթայթելու հանապազօրյա հացը: Արտագնաց աշխատանքի էր մեկնում նաև հայրը՝ Իվան Կալինինը: Տնտեսության հոգսը ծանրանում էր մոր՝ Մարիա Վասիլևնայի ուսերին, իսկ Միշան, վեց տարեկանից սկսած, խնամում էր փոքրիկներին:

նը առավել ակտիվորեն է շարունակում հեղափոխական գործունեությունը, ջերմորեն պաշտպանում կազմակերպական և տակտիկական հարցերի վերաբերյալ լենինյան դրույթները, անխնա կերպով պայքարում մենշևիկների, լիկվիդատորների և բոլշևիկյան կուսակցության մյուս թշնամիների, հակալենինյան տարրերի դեմ: Եվ ուր էլ որ լինում է՝ Պետերբուրգում, թե՛ Մոսկվայում, Ռևելում, թե՛ այլուր, նա հաջողությամբ զուգակցում է բանվորի համեստ ու դժվարին և պրոֆեսիոնալ հեղափոխականի վտանգներով լի աշխատանքը, բնավ չերկնչելով ձերբակալությունից, բանտ ու աքսորից: Բանտախցից դուրս գալուց հետո նա նոր ոգևորությամբ է մխրճվում հեղափոխության հորձանուտը: «Պետերբուրգի նախնական կալանատունը,— գրում է Յ. Զելիկսոն-Բոբրովսկայան,— Մետեխի բերդը Թիֆլիսում, Ռևելի բանտը, նորից Պետերբուրգի նախնական կալանատունը, «Կրեստի» կոչված բանտը, Պոլոնեցի աքսորավայրի ճանապարհին եղած բանտերը, ինչպես և մի շարք խուզարկությունները, կարճատև ձերբակալությունները, հարցաքննությունները և արտաքսումները Պետերբուրգից, Սուշչևի ոստիկանատունը Մոսկվայում—սրանք են Միխայիլ Իվանովիչ Կալինինի համալսարանները՝ նրա հեղափոխական գործունեության առաջին տասնամյակի ընթացքում» (**Մ. Ի. Կալինին,** Հայպետհրատ, 1929, էջ 25):

Եվ այսպես, հեղափոխության անանկում մարտիկը իմաստնանում է, դառնում նրա բոցաշունչ առաջնորդներից մեկը: Դրա վկայությունը բանվորական շարժման վերելքի և Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության նախօրյակին Մ. Ի. Կալինինի ծավալած բազմաբեղուն գործունեությունն էր: Միանգամայն օրինաչափ էր, որ բոլշևիկների կուսակցության 1912 թ. Պրագայի կոնֆերանսը, հաշվի առնելով հեղափոխական գործչի փորձն ու վաստակը, նրան ընտրում է Կենտկոմի ու նրա ռուսական բյուրոյի անդամության թեկնածու: Այդ տարիներին Միխայիլ Իվանովիչն աշխատում է Պետերբուրգի «Այվազ» գործարանում, ագիտացիոն, պրոպագանդիստական ու կազմակերպական լայն աշխատանք ծավալում մասսաների շրջանում, նրանց համախմբում բոլշևիկյան «Պրավդա» թերթի շուրջը, կազմակերպում հակապատերազմական ցույցեր: 1916-ին մեծ հմտությամբ խուսափում է սիբիրյան աքսորից, Կենտկոմի որոշմամբ անցնում է ընդհատակ և «Լորբերգ» ծածկանունով աշխատում Ֆինլանդական կայարանի մերձակա փոքրիկ արհեստանոցում:

1917 թ. փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունից հետո Մ. Ի. Կալինինի առջև բացվում է եռանդուն գործունեության նոր ու լայն ասպարեզ. ընտրվում է Պետրոգրադի առաջին լեգալ կոմիտեի անդամ, քաղաքային դումայի անդամ, ապա՝ դումայի նախագահ: Նա անկոտրում կամքով պայքար է ծավալում հակաժողովրդական կուսակցությունների՝ կադետների, մենշևիկների և էսեռների դեմ, ժողովրդի շահերը պաշտպանող կառավարություն ստեղծելու համար:

Չափազանց մեծ ու արժեքավոր է Մ. Ի. Կալինինի ավանդը սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման գործում: Իրադարձություններով հարուստ այդ ամիսներին նա պաշտպանում է հեղափոխության, պատերազմի, ժամանակավոր կառավարության վերաբերյալ լենինյան դիրքորոշումը: Նրա նախաձեռնությամբ բոլշևիկների Պետերբուրգի կոմիտեն 1917 թ. հոկտեմբերի սկզբներին քննարկում է Վ. Ի. Լենինի՝ բոլշևիկյան Կենտկոմին, Մոսկվայի և Պետերբուրգի կոմիտեներին, սովետների բոլշևիկ անդամներին ուղղված նշանավոր նամակը և հավանություն տալիս դրան: Այդ նամակում առաջնորդը խորհուրդ էր տալիս դիմել **ապստամբության,** որովհետև դեպքերն այդ խնդիրն են թելադրում, այլապես հապաղումը **հանցագործություն** կլինի (տե՛ս **Երկեր,** հ. 26, էջ 159—161): Իսկ զինված ապստամբության վերաբերյալ Կենտկոմի հոկտեմբերի 10-ի հայտնի նիստից հետո Մ. Ի. Կալինինը Պետրոգրադի կոմիտեի նիստում (հոկտեմբերի 15-ին) զեկուցում է ապստամբության կազմակերպական-տեխնիկական նախապատրաստության մասին, ջերմորեն պաշտպանում Կենտկոմի բանաձևը: Հաջորդ օրն արդեն



քաղաքային դումայի նախագահ Կալինինի առանձնասենյակում, գաղտնի պայմաններում, Լենինի մասնակցությամբ գումարվում է բոլշևիկյան Կենտկոմի ընդլայնված նիստը, որը քննարկում է զինված ապստամբությանն առնչվող բոլոր հիմնական հարցերը և ընտրում ապստամբությունը ղեկավարող կուսակցական կենտրոն:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո Պետերբուրգի քաղաքային դուման, որպես հակահեղափոխության օջախ, ցրվում է: Նոր ընտրությունների շնորհիվ բոլշևիկ դեպուտատները բացարձակ մեծամասնություն են կազմում և քաղաքային վարչության նախագահ ընտրում Մ. Ի. Կալինինին: Որպես քաղաքագլուխ Միխայիլ Իվանովիչն իրեն հատուկ եռանդով լծվում է անդադրում աշխատանքի, ցուցաբերում անկոտրում կամք ու ստեղծագործական նախաձեռնություն, վճռական պայքար կազմակերպում քաղաքային տնտեսության ու սաբոտաժի դեմ, օր առ օր կարգի բերում քաղաքային տնտեսությունը, ելույթներ ունենում ձեռնարկությունների կոլեկտիվների առջև, պրոպագանդում բոլշևիկյան կուսակցության գաղափարները, կոչ անում մասսաներին՝ պաշտպանել սոցիալիստական պետությունը, ամեն ինչ անել նոր կյանքի կերտման համար:

Մ. Ի. Կալինինը ոչ միայն սիրելի ու հարազատ էր բանվորական կոլեկտիվներին, այլև բազմամիլիոնանոց չքավոր ու միջակ գյուղացիությանը, հետաքրքրվում էր նրանց հոգսերով, առօրյայով, աշխատանքային ու կենցաղային պայմաններով: Նա անքակտելի կապերով կապված էր աշխատավորական լայն մասսաների հետ, համարվում էր նրանց շահերի իսկական արտահայտիչը:

Հատկանշական է, որ Յակով Սվերդլովի մահից հետո Վլադիմիր Իլյիչը Կենտրոնական գործադիր կոմիտեի նախագահի պաշտոնի համար, առանց երկմտելու, առաջարկում է Մ. Ի. Կալինինի թեկնածությունը: Նա,— ասում է առաջնորդը Կալինինի մասին,— քսան տարվա կուսակցական աշխատանք ունի իր թիկունքում, Տվերի նահանգի գյուղացի է և սերտ կապի մեջ է գյուղացիական տնտեսության հետ և շարունակ նորոգում, նորացնում է այդ կապերը. Պետրոգրադի բանվորները կարողացել են համոզվել, որ նա աշխատավոր մասսաների լայն շերտերին մոտենալու հմտություն ունի, երբ նրանք կուսակցական պատրաստություն չունեն, երբ պրոպագանդիստներն ու ագիտատորները չէին կարողանում ընկերաբար և հմտորեն մոտենալ նրանց, այն ժամանակ ընկեր Կալինինին հաջողվում էր այդ խնդիրը լուծել: Ներկա պահին այս բոլորը հատկապես կարևոր է (տե՛ս **Երկեր,** հ. 30, էջ 279—280): Եվ Մ. Ի. Կալինինը 1919-ի մարտի 30-ին ընտրվում է համամիութենական կենտգործկոմի նախագահ:

Ծանր ժամանակներ էին. քաղաքացիական կռիվների տարիներ: Մ. Ի. Կալինինը ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանք է տանում բանվորների, գյուղացիների, կարմիրբանակայինների շրջանում, ղեկավարում է «Հոկտեմբերյան հեղափոխություն» ագիտգնացքը, որն ուղերթ էր կատարում Ռուսաստանի կենտրոնական շրջանները, Ուկրաինա, Հյուսիսային Կովկաս, Սիբիր, լինում քաղաքացիական կռիվների գրեթե բոլոր ռազմաճակատներում: Այդ ժամանակաշրջանում նրա ծավալած գործունեությունը հսկայական նշանակություն է ունենում սովետական իշխանության ամրապնդման, կարմիր բանակի հաղթանակի համար:

1922-ի դեկտեմբերին կազմվում է Սովետական Միությունը, և Կալինինն ընտրվում է ՍՍՀՄ կենտգործկոմի նախագահ, իսկ ՀամԿ(բ)Կ XIV համագումարից, սկսած ավելին մեջ ընտրվում է կուսակցության Կենտկոմի և նրա քաղբյուրոյի անդամ: 1938-ից մինչև 1946 թ. մարտը Կալինինը ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահն էր, իսկ ապա, մինչև իր կյանքի վերջը՝ Գերագույն սովետի նախագահության անդամ:

Լինելով սովետական պետության ղեկավար՝ Մ. Կալինինը երկրի վերականգնման և ինդուստրացման, ժողտնտեսության զարգացման հնգամյակների տարիներին լինում էր ձեռնարկություններում, կոլտնտեսություններում,

կառույցներում, ծանոթանում աշխատավորների կյանքին, հաղորդակցվում նրանց հետ, կոչ անում պաշտպանել Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումները, հաղթահարել դժվարությունները, ուժերի ներածին չափով նեցդնում անել երկրի բարգավաճման, հզորության ու պաշտպանունակության ամրապնդման գործում։

Մ. Ի. Կալինինին հույժ մտահոգում էին սովետական մարդկանց, հատկապես երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրները։ Դրանց վերաբերյալ նա թողել է գրական հարուստ ժառանգություն։ Նրա խորիմաստ մտքերն ու ասույթները այժմ էլ չեն կորցնում իրենց հրատապությունն ու արժեքավորությունը։ Այս առումով հետաքրքրական է նրա արտասանած ճառը ՀամԼԿԵՄ VII համագումարում, 1926 թ. մարտի 11-ին։ Միխայիլ Իվանովիչը կոմերիտմիությունը համարում էր մեր երկրի գլխավոր հարստությունը։ «Ի դեմս կոմերիտմիության,— ասում էր նա,— մենք ունենալու ենք այն ջոկատները, որոնք հետո լրացնելու են սոցիալիզմի համար պայքարող հին մարտիկների շարքերը» (**Երիտասարդության մասին,** Հայպետհրատ, Երևան, 1951, էջ 29)։ Իսկ որպեսզի կոմերիտմիությունն իր այդ դերը լավ կատարի, նա երիտասարդներին խորհուրդ էր տալիս սովորել, լինել լավ մասնագետ, ուսումնասիրել մարքսիզմը և այն ճիշտ ու ստեղծագործորեն կիրառել պրակտիկ կյանքում։

Մ. Ի. Կալինինը պետության գլխավոր խնդիրն էր համարում առողջ ու գիտակ երիտասարդության ստեղծումը, նրա բազմակողմանի դաստիարակությունը, խորհուրդ էր տալիս երիտասարդության մեջ այնպես ամրապնդել կոմունիզմի գաղափարները, նրան այնպես դաստիարակել, որ նա պատանեկան ամբողջ եռանդով սիրի սովետական երկիրը (տե՛ս նույն տեղը, էջ 280)։ Երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը նա համարում էր մի բարդ ու լայն համակարգ, որը ներառնում է դաստիարակության բոլոր կողմերը՝ քաղաքական, բարոյական, ֆիզիկական, էսթետիկական և այլն, իսկ մարդկանց կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը դիտում որպես բոլոր հաջողությունների գրավական։

Մ. Ի. Կալինինը բազմիցս անդրադարձել է մեր երկրում կրթության կազմակերպման ու բարելավման հարցերին, արժեքավորել ուսման որակի բարձրացման, սովորողների բազմակողմանի զարգացման, կուլտուրական հեղափոխության իրականացման գործում սովետական ուսուցչի խաղացած հսկայական դերն ու կատարած մեծ ներդրումը։ Նա խորհուրդ էր տալիս ուսուցիչներին՝ ընթանալ ժողովրդի ամենառաջավոր մասի հետ, սովորել ժողովրդից, ամեն օր, ամեն ժամ լրացնել գիտելիքները, որպեսզի կարողանալ հաջողությամբ լուծել մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության, նրա կոմունիստական գիտակցության ձևավորման դժվարագույն խնդիրը։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին Մ. Ի. Կալինինը շրջագայում էր երկրում, հանդիպումներ ունենում զինծառայողների, բանվորների ու կոլտնտեսականների, մտավորականության ներկայացուցիչների հետ, հանդես էր գալիս պարբերական մամուլում։ Իր գրավոր ու բանավոր բազմաթիվ ելույթներում համամիութենական ավագը սովետական մարդկանց, երիտասարդության ուշադրությունը սևեռում էր ռազմաճակատի ու թիկունքի, սովետական բազմազգ ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության ամրապնդման վրա։ Նա ջերմորեն էր արտահայտվում բոլոր նրանց մասին, ովքեր սխրանքներ էին գործում ռազմաճակատում, հերոսական գործեր կատարում հաստոցի մոտ ու հանրային դաշտերում, ովքեր օգնում էին կոփելու մեծ հաղթանակը։ Ինչպես միշտ, պատերազմական տարիներին ևս Մ. Ի. Կալինինը չէր մոռանում երիտասարդությանը, նրա մասին խոսում էր անսահման հավատով, խորհուրդ տալիս կոմերիտականին՝ ուսումնասիրել ռազմական գործը, ձեռք բերել ֆիզիկական կայունություն, արտադրության մեջ լինել նախաձեռնող, առավելագույն չափով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը (տե՛ս **Ամեն ինչ անել թշնամուն հաղթելու համար,** Բաքու, 1941, էջ 8—17)։



Իր բոլոր ելույթներում Մ. Ի. Կալինինը գերմանական ֆաշիզմի պարտությունը համարում էր անխուսափելի, մեծ հավատով արտահայտվում մեր հաղթանակի վերաբերմամբ, կոչ անում բանվորներին, կոլտնտեսականներին, մտավորականներին՝ ամեն ինչ անել հաղթանակն ապահովելու համար։

Մ. Ի. Կալինինին բախտ վիճակվեց տեսնել գերմանական ֆաշիզմի դեմ տարած մեր ժողովրդի պատմական մեծ հաղթանակը, որի կոփման համար, այնպես համամիութենական ավագ, սովետական պետության ղեկավար, այնքան շատ եռանդ ու ջանք էր գործադրել նաև ինքը։ Նա վախճանվեց 1946-ի հունիսի 3-ին և լուսավոր հետք թողեց իրեն ճանաչողների սրտերում։ Իսկ նրան ճանաչում էին մեր բովանդակ հայրենիքի բոլոր աշխատավորները։ Նա հավասարապես մոտ ու հարազատ էր բանվորին ու կոլտնտեսականին, մտավորականության բոլոր խավերին։

Հայ ժողովուրդը ևս բարի է հիշում Մ. Ի. Կալինինին, որը 27 տարի եղել է սովետական պետության ղեկավարը և անձնուրաց կերպով պայքարել սոցիալիզմի հաղթանակի, ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական վերելքի ապահովման, նրանց եղբայրական համագործակցության ամրապնդման համար։

Միխայիլ Իվանովիչը երեք անգամ, 1927, 1935 և 1940 թվականներին, եղել է Սովետական Հայաստանում, շրջագայել քաղաքներն ու գյուղերը, սրտաբաց զրուցել բանվորների ու գյուղացիների հետ, ուրախացել հայ ժողովրդի տնտեսական ու կուլտուրական հասումների համար։ Առաջին այցելության առիթը եղել է Լենինականում և շրջակա գյուղերում 1926-ին տեղի ունեցած երկրաշարժը, որը մեծ վնաս էր պատճառել։ Մեկ տարի անց Կալինինը այցի էր եկել՝ ծանոթանալու վերականգնման աշխատանքներին։ Լենինականում տեղի ունեցած միտինգում նա խոսում է իր տպավորությունների, արտադրության վերելքի, գյուղի վերափոխման գործում բանվոր դասակարգի մեծ դերի մասին, առաջ քաշում ներքին ռեզերվները մոբիլիզացնելու անհրաժեշտության հարցը, բարձր գնահատում Շիրակի ջրանցքի կառուցումը, հույս հայտնում, որ Սովետական Հայաստանի բանվորությունը հաջողությամբ կլուծի պատմության կողմից իր վրա դրված խնդիրները (տե՛ս Շ. Առուշանյան, **Մ. Ի. Կալինինը Սովետական Հայաստանում,** Հայաստան հրատ., Երևան, 1968)։

1935-ի նոյեմբերի 29-ին, Հայաստանի վերածննդի 15-ամյակի առթիվ տեղի ունեցած Հայկական ՍՍՀ Կենտգործկոմի հոբելյանական հանդիսավոր ժողովում համամիութենական ավագը կուսակցության Կենտկոմի, ՍՍՀՄ Ժողկոմխորհի և Կենտրոնական գործադիր կոմիտեի անունից ջերմորեն ողջունում է նրա մասնակիցներին, գոհունակությամբ խոսում հանրապետության տասնհինգամյա նվաճումների մասին, նշում հետագա հաջողությունների ուղիները։

Երրորդ այցելության առիթը եղել է մի մեծ խումբ զինվորական հրամանատարների, քաղաշխատողների և կարմիրբանակայինների պարգևատրումը Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։ Լենինականում և Կիրովականում տեղի ունեցած միտինգներում Մ. Ի. Կալինինը, պարգևները հանձնելով մարտական ու քաղաքական ծառայության առաջավորներին, կոչ է անում՝ մարտիկներին դաստիարակել մարքսիզմ-լենինիզմի ոգով, հույս հայտնում, որ նրանք հայրենիքին կծառայեն անսահման նվիրվածությամբ։ Հայրենական պատերազմի տարիներին հայ ժողովրդի զավակները իրենց ցուցաբերած անօրինակ սխրանքներով արդարացրին այդ վստահությունը։

***

Ու թեև բազում տարիներ են անցել, սակայն Մ. Ի. Կալինինի անունը մնացել է Սովետական Միության աշխատավորների հիշողության մեջ, նրա խոսքն ու գործը ոգեշնչման աղբյուր են բոլորի համար։ Նա ապրել է բեղուն ու իմաստալից կյանք։

**Ս. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ**

լենինյան այն ցուցումով, թե քննադատությունը պետք է լինի «ընկերական, ուղղամիտ, դիվանագիտությունից ու մանր հաշիվներից զերծ»: Դրա արժեքը ոչ թե արտահայտությունների խստությունն է, այլ ճշմարտացիությունը, ապացույցի ուժը:

«Արարատ» լրագրի խմբագրությունն ստուգայցեր է կազմակերպում գարնան-գյուղատնտեսական աշխատանքների նախապատրաստման ընթացքը լուսաբանելու նպատակով: Ստուգայցային բրիգադները լինում են անասնապահական ֆերմաներում, հիմնարկություններում և արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական կազմակերպություններում, ամփոփելով ստուգայցը՝ կոնկրետ փաստերի վերլուծությամբ լուսաբանում ընտանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը:

Լրագրում ստուգայցերի առնչությամբ նըշված է Վեդի ավանի փողոցների անբարեկարգ, անմաքուր վիճակը: *Գյուղի մարդկանց հոգսերը* (№ 12) հոդվածում Մ. Թումանյանը, Ա. Թելունցը և Լ. Թումանյանը ցավով են նկարագրում Ծաղափ գյուղի քարքարոտ, ցեխոտ փողոցները: Գյուղի մարդկանց միակ կուլտուրական օջախը՝ ակումբը, զուրկ է տարրական հարմարություններից: Գյուղը չունի ջուր, հեռախոս և այլն: Հոդվածագիրներն իրավամբ գտնում են, որ այդ ամենի համար պետք է պատասխանատվություն կրեն գյուղսովետը, սկզբնական կուսկազմակերպությունները: Վիճակը նույնն է և Այգավանում (№ 46), ուր մտնելը շատ դժվար է, այնտեղից դուրս գալը՝ առավել,— գրում է Զ. Գաբրիելյանը:

Լրագիրը նշում է, որ Արարատի շրջանում դեռևս արդյունավետ չեն օգտագործվում հողը, ջուրը, տեխնիկան, պարարտանյութերը, արտադրամիջոցները: Անասնապահական ֆերմաներում աշխատանքների մոտ 80 տոկոսը կատարվում է ձեռքով: Թերակատարվում են խաղողի արտադրության ու վաճառքի քառամյա պլանները:

Այսպես է վիճակը և Արմաշում: Հ. Օհանյանը *Պարտքի և պատասխանատվության գիտակցումով* (№ 12) հոդվածում նշում է. որոշիչ տարում այստեղ թերակատարվեցին պտղի, անասնապահական մյուս մթերքների արտադրության ու հանձնման առաջադրանքները: Անասնապահական ֆերմաներում տարվող անբավարար աշխատանքի ու կարգապահական խախտումների հետևանքով ցածր է աշխատանքի արտադրողականությունը, բարձր՝ արտադրանքի ինքնարժեքը:

Շրջանում խմելու ջրի մատակարարման գործի վիճակին է նվիրված Արարատի շրջսովետի գործկոմի նիստը (*Ջրի պահպանումը համաժողովրդական գործ է*, № 63): Հանգամանորեն վերլուծելով ջրի օգտագործման վիճակը շրջանում, վերհանելով ջրի անհարկի կորուստների և շռայլումների հետևանքները, նիստում միջոցառումներ մշակվեցին քաղաքացիների կողմից կատարված ինքնակամ միացումներն անջատելու և դրանում մեղավորանձանց պատժելու նպատակով:

Մեծ է առաջնակարգ և հարմարավետ ճանապարհների դերն անվտանգ երթևեկության գործում: Մինչդեռ հաճախ անկազմակերպ և անպատասխանատու վերաբերմունքը վնասներ է հասցնում պետական նշանակություն ունեցող այդ կարևոր գործին: Այդ մասին ենք կարդում լրագրի մայիսի 29-ի համարում Ա. Զիրոյանի, Գ. Բաղդասյանի, Մ. Թումանյանի *Լուրջ ուշադրություն ճանապարհաշինությանը* հոդվածում: Նշվում է, որ շրջանում բարվոք չեն Լուսառատ, Ծիղլու տանող, Թայթան—Այգավան գյուղամիջյան ճանապարհները: Ճանապարհների անբարեկարգությունը բացասաբար է ազդում մարդատար ավտոմեքենաների նորմալ երթևեկության վրա. ժամանակից շուտ դրանք փչանում են, որի հետևանքով տուժում է բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը:

Ուշագրավ է Վ. Արաքսյանի *Վերացնել վարձատրության գործում տեղ գտած թերությունները* (№ 53) հոդվածը: Աշխօրային սիստեմի վարձատրության պայմաններում Արարատի շրջանի կոլտնտեսություններում թույլ են տըրվել հավասար աշխատանքի դիմաց հավասար վարձատրության սոցիալիստական սկզբունքի լուրջ խախտումներ: Միևնույն ծավալի և որակի աշխատանքի համար կոլտնտեսականներն ստացել են սահմանված չափը գերազանցող, միմյանցից խիստ տարբեր չափի աշխօրեր: Դրամական վարձատրության անցնելիս, այդ խախտումները կարգավորվել են, բայց որոշ կոլտնտեսություններում կոլտնտեսականները հավասար աշխատանքի դեպքում տարբեր վարձատրություն են ստանում:

*Բերքահավաքի դաշտերում* խորագիրն է կրում Զ. Գաբրիելյանի *Աշխատանք և հոգսեր* (№ 76) հոդվածը: Հեղինակն այստեղ վկայակոչում է արմաշցի պտղաբույծներ Ս. Բարսեղյանի, Պ. Նիկողոսյանի, Խ. Շահնազարյանի փաստարկները, որոնք դժգոհում են, թե իրենց պահանջներն անուշադրության են մատնվել: Բերքահավաքի եռուն շրջանում մարդիկ աշխատանքի են գնում առավոտյան ժամը 8-ին, վերադառնում 6 անց կես, 7-ին, իսկ սովխոզի ղեկավարությունը գտնում է, որ աշխատանքային ժամերը նորմավորված չեն, գործ լինելու դեպքում պետք է շատ աշխատել, չլինելու դեպքում՝ քիչ, վերջում կհավասարվեն ժամերը: Հեղինակը եզրակացնում է, որ պտղաբույծներն իրավացի են, վարձատրման ձևը ճիշտ չէ: Արտաժամյա հիմունքներով վճարումը բարձրացնում է բանվորների շահագրգռվածությունը, հետևապես և աշխատանքի արդյունավետությունը:

*Որակի հարցը ուշադրության կենտրոնում* խորագրի տակ հրապարակված է Հ. Սարգըսյանի *Բարելավել տնտեսավարման կուլտուրան* (№ 26) հոդվածը: Աստեղ նշված է, որ կան կոլտնտեսություններ, որոնք ինչպես մսի, նույնպես և կաթի վաճառքի գործում տարիներ շարունակ թերանում են, լրջորեն չեն մտահոգվում ամսվա, եռամսյակային պլանների կատարմամբ: Մսի վաճառքի առաջադրանքը 2—4 տարի չեն կատարում Խալիսայի, Նոր կյանքի, Արարատի, Այգավանի, Գոռավանի կոլտըտնտեսությունները և Սպանդարյանի անվան սովխոզը, կաթինը՝ Արմաշի, Սպանդարյանի անվան, Դվին, Սովետաշենի, Զովաշեն սովխոզները:

Լրագիրն անդրադառնում է նաև գազիֆիկացման աշխատանքներում տեղ գտած թերություններին (*Համբերությունը սահման ունի*, № 77): 1974 թ. մարտից Արարատ գյուղում բնական գազ անցկացնելու նպատակով շինարարները որոշ աշխատանքներ էին սկսել: Գազի հույսին մնացած արարատցիները չէին պլանավորելածխի ստացումը և բավական դժվարությունների հանդիպեցին: Հարցազրույցի ժամանակ գազի վարչության գլխավոր ինժեներ Գ. Սաֆարյանը թերացման պատճառը համարեց կոլտնտեսության վարչության նախագահների և գազի վարչության միջև միասնության բացակայությունը: Էջմիածնի շինմոնտաժային վարչության Արարատի տեղամասի պետ Զ. Մանասյանը գիտակցելով իր մեղքը, խոստացավ հուլիսի վերջին արարատցիներին ապահովել գազով:

Ընթերցողը իրավամբ զայրանում է այն վաճառողների դեմ, որոնք հաճախակի ոտնահարում են սովետական առևտրի կանոնները, արհամարհում գնորդի իրավունքները: Արարատի քաղաքի տնտեսական ապրանքների № 26 խանութում, ուր աշխատում էին վարիչ-վաճառող Վարդուշ Ավագյանը և վաճառող Սաթիկ Ստեփանյանը, ապրանքի ազատ ընտրություն կատարվել է միայն պահեստային մասում, «ընտրովի» մարդկանց կողմից— կարդում ենք *Վերջ տալ առևտրի կանոնների խախտումներին* (№ 62) հոդվածում: Օգտվելով քաղաքի հաշտվողական վերաբերմունքից, աշխատանքի ընթացքում պետական և սեփական ունեցվածքը չեն զանազանել № 5 մթերային խանութի պատասխանատու վաճառող Բ. Զամանյանը և վաճառող Ս. Ալեքսանյանը:

Անշուշտ, թերությունների բացահայտման գործում մեծ է երգիծանքի և հումորի դերը: Այդ ժանրին երբեմն դիմում է լրագիրը՝ վստահ դրա ներգործուն ուժին: Այս տեսակետից ուշագրավ է *Իմ թշվառ, անաստատ մակինտոշ...* (№ 10) ֆելիետոնը: Ա. Կարապետյանը երբեք չի մոռանա քիմմաքրման կետի աշխատողներից մեկի՝ Դուխիկ Մանուկյանի «խոսքի ու գործի միասնությունը». «այնպես մաքրենք ու նորացնենք, որ տեսնես՝ չճանաչես»: Իրոք, երկար սպասումներից, անհանգիստ շաբաթներից ու ամիսներից հետո ստանում է մակինտոշը՝ անճանաչելիորեն փոխված, սկըզբում առանց աստառի, այնուհետև 48 չափսի աստառը 56 չափսի վրա:

Ցանկալի է, որ աշխատանքում ու կենցաղում, մարդկային փոխհարաբերություններում նկատվող արատները հաճախակի խարազանվեն երգիծանքի ու հումորի միջոցով:

Թերությունների ձաղկման նպատակով լրագիրը հաճախ տպագրում է դիպուկ, մերկացնող ռեպլիկներ (*Բա ամոթ չի՞...*, № 4, *Զամիչով կարկանդակ*, № 20) և այլն:

Պաշտոնյա մարդու հոգեբանությունն է ներկայացված *Ինչ արած* (№ 8) ռեպլիկում: Նա կարող է ժամերով սպասեցնել, չարանալ, բայց իմանալով, որ իր մոտ եկողը պաշտոնով-վերադաս է, ժպտալ, մեղմանալ, խեղճանալ ստորանալու աստիճան:

Խրախուսելի է, որ «Արարատ» լրագրի խմբագրությունը ո՛չ միայն մտահոգված է շրջանի էկոնոմիկայի տարբեր ոլորտներում եղած ստվերոտ կողմերի բացահայտմամբ, այլև երբեմն ստուգում է իր քննադատական ելույթների արդյունքը, հրապարակում արձագանքները:

*Մեր քննադատությունից հետո* խորագրի տակ փետրվարի 27-ի համարում զետեղված է *Ազատված է աշխատանքից* հրապարակումը: Դեռևս 1974 թ. նոյեմբերի 13-ի համարում *Փորձիր դժգոհել* հոդվածում վերհանված էր Արաքսյա Ռուշանյանի՝ առևտրի սովետական աշխատողին անվայել վարքագիծը. կոպտում էր գնորդներին, խախտում ապրանքների գները: Այդ ամենի համար նրան քննադատել, արել են նկատողություն՝ վերջին նախազգուշացումով: Բայց ոչինչ չի փոխվել: Այս տարվա փետրվարի 6-ի համարում մի խումբ դպրոցականներ *Ոչինչը կորցրած վաճառողուհին* նամակ-բողոքով հայտնել են իրենց զայրույթն ու զարմանքը— մի՞թե չկա մեկը, որ բռնի խիղճը կորցրած վաճառողուհու ձեռքը: Լրագիրը

տըրի, հասարակական սննդի բնագավառներում եղած թերություններին: Լիազորական այդ ժողովի նյութերը հրապարակված են՝ Առևտրի ապառարկումը չի գոհացնում վերնագրով (№ 32):

Շրջանի սանիտարական վիճակով մտահոգ՝ թերթը հրապարակել է Որ շրջապատը գեղեցիկ լինի վերնագրով հոդված և պարբերաբար տպագրում է դրա արձագանքները: Սիրել իր գյուղը,— գրում է Ալագյազ գյուղի բնակիչ Ռոստամ Ալոյանը (№ 61),— նշանակում է կարողանալ շենացնել այն, մաքուր պահել, սեփական ավանդ ունենալ՝ տանտիրոջ իրավունքով գյուղին նայելու համար: Ճշմարիտ է ասված: Ապա նա նկարագրում է գյուղի անբարեկարգ, ցեխոտ ու աղբոտ փողոցները: Ներկայացնելով այս անհանդուրժելի վիճակը՝ հեղինակը եզրակացնում է. «Եթե հասարակության յուրաքանչյուր անդամ բարեխղճորեն կատարի իրեն վստահված գործը, մտահոգվի իր շրջապատի բարեկարգման հարցով, ապա կշահի և՛ ինքը, և՛ գյուղը, և՛ հասարակությունը»:

Այդ արձագանքներից է և Կարևորը միայն որոշումները չեն հոդվածը, ուր Մելիքգյուղի բնակիչ Հ. Մկրտչյանը գրում է, որ չնայած գյուղական սովետին կից գործում է բարեկարգման ու սանիտարական վիճակով զբաղվող մշտական հանձնաժողով, վիճակը գյուղում անմխիթարական է: Բազմիցս որոշումներ են կայացվել, բայց իրավիճակը նույնն է:

Ջուր սպասում մանրապատումի հեղինակ Շ. Դավթյանը շրջակայքի, գյուղի բարեկարգումը համարում է համընդհանուր գործ, որին պետք է լծվեն բոլորը— և՛ մեծը, և՛ փոքրը, և՛ ղեկավարը, և՛ շարքային աշխատողները, բոլոր բնակիչները համատեղ: Պետք չէ հույսը դնել այն բանի վրա, թե ձյունը կգա, կծածկի աղտեղության մեծ մասը, մի մասն էլ կսրբի-կտանի. հարկ է հոգալ, ամեն ինչ անել, որ իրոք գեղեցիկ, ակնահաճո լինի շրջակայքը: Չէ որ մարդը նաև բնական միջավայրի արդյունք է. որքան բարեկարգ ու մաքուր, այնքան բարեկիրթ, մաքրասեր ու կուլտուրական է դառնում ինքը՝ այդպիսի շրջապատ ստեղծողը:

Վերջում կկամենայինք ինքներս էլ քննադատել, ժուռնալիստի մեր խոսքն ուղղել մեր կոլեգաներին, հիշեցնելով նրանց Կոնստանդին Ֆեդինի խոսքերն այն մասին, թե ամեն մի գրիչ վերցնող պետք է հիշի, որ իր գրածով ինքն ազդում է թերթի, ամսագրի, ընդհանուր լեզվի զարգացման ընթացքի վրա, խթանում կամ արգելակում է այն: Ուրեմն, սթափ ուշադրությամբ հետևենք, որպեսզի լրագրի էջերում չլինեն նման նախադասություններ, արտահայտություններ... «...Նորոգման ուղղությամբ պարզապես ոչինչ չի արվել, այն դեպքում, երբ յուրաքանչյուր կոմբայնի վրա նորոգման ուղղությամբ հսկայական աշխատանք կա» (№ 63), «Ժողովում խիստ քննադատական խոսք գնաց այն ուղղությամբ ..» (№ 32), «Թեկուզ նոր ստացված մատողաշի մեջ առկա է ոջիլը, լուծը և այլ հիվանդություններ», «...անասունը երբ հիվանդանում է... թույլ են տալիս նրան հասնելու մինչև հյուծվելու աստիճան» (№ 29): Մի՞թե կարելի է այսպես՝ մարդ ու անասուն իրար խառնած գրել. «Անբարեկարգ է կովանոցի սանիտարական վիճակը: Միրաքում դպրոցահասակ երեխաներին ծնողների փոխարեն աշխատեցնելը սովորական երևույթ է: Վատ է կազմակերպվում մոզիների խնամքը». կամ՝ «Մոզիները տեղափոխվել են Մելիքգյուղ, կարգի են բերվել խմոցները: Ստեղծված է կարմիր անկյուն» (№ 40): Ակամա հիշում ես Գասպարյանի հանրահայտ շարադրությունը:

Ժուռնալիստների, գրողների զենքի՝ մեր լեզվի անաղարտության հարցը պետք է լինի մեր հանապազօրյա հոգածության առարկան:

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

## ՄԽԻԹԱՐ ԳՈՇԻ ՍՈՑԻԱԼ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐԻ ՇՈՒՐՋ

Հ. Ս. ԲԱԲԱՅԱՆ

ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ, հաճախակի կորցնելով իր պետականությունը, այն նորից վերականգնելու փորձեր է արել: Նման իրավիճակ ստեղծվեց նաև XII դարում, երբ քաղաքական իշխանության վերականգնման համար ռեալ պայմաններ էին առաջացել: Զաքարյանները, հայ և վրաց զինված ուժերի գլուխ անցած, ազատագրել էին Մեծ Հայքը և շարունակում էին միմյանց հետևից ազատագրել առանձին քաղաքներ ու գավառներ: Այդ կովին նոր լիցք ու թափ էին հաղորդել Կիլիկիայում հայկական թագավորության հիմնումն ու Լևոն II-ի հաջողակի արշավանքները, ինչպես և վրացական պետականության վերականգնումը:

Այսպիսի իրադրության մեջ աշխուժացավ նաև տեսական միտքը, որն արծարծում էր հայ պետականության վերականգնման հնարավոր ուղին:

Ըստ Մխիթար Գոշի, քաղաքական իշխանության միակ ձևը միապետական կարգն էր: Այդպիսի մոտեցումը բնական էր, որովհետև XII դարում Հայաստանի սոցիալ-տնտեսական իրավիճակին համապատասխանում էր միայն այդ վարչաձևը, որը համընդհանուր էր ամբողջ ֆեոդալական միջնադարի համար և համաշխարհային պատմության մեջ գնահատվում էր որպես առաջադիմական երևույթ:

Հայտնի է, որ Ֆ. Էնգելսը պետականության կենտրոնացման պրոցեսը համարում էր հարաբերականորեն առաջադիմական: Նա գրել է, որ «Թագավորի իշխանությունը այդ շրջանում դիտվում էր որպես «անկարգության մեջ կարգի» (порядков в безпорядке) ներկայացուցիչ, որպես քաղաքացիների դաշնակից նրանց՝ խոշոր ֆեոդալների հետ ունեցած պայքարում»[1]:

Ըստ Մխիթար Գոշի, թագավորներ կարող են կոչվել նրանք, ովքեր միանգամից տիրում են իրենց ամբողջ ժողովրդին և ուրիշներից հարկ են վերցնում կամ լավագույն դեպքում իրենք չեն հարկվում ուրիշ թագավորության կամ թագավորի կողմից[2]:

Գոշի համոզմամբ, հայոց միապետության վերականգնումը երաշխավորում է երկրի կայունացումն ու անխոցելիությունը, որը տվյալ պետության համար հնարավորություն կստեղծի իր գործունեության մեջ լինել անկախ ու ինքնիրավ:

Սահմանափակելով ավատական դասի գրեթե անսահմանափակ իրավունքները, Գոշն աշխատում էր մի կողմից վերջ տալ ազգային երկպառակություններին, իսկ մյուս կողմից՝ ունենալ հզոր միապետ: Պատմության դասերից նրան քաջ հայտնի էր, որ միայն ֆեոդալական հզոր միապետի առկայությունը կստեղծի երկրին ու նրա ժողովրդին արտաքին թշնամիներից պաշտպանելու հնարավորություն: Անա այդ միտումով է, որ նա երկրի ողջ տնտեսական ու քաղաքական զարկերակը ենթարկում է թագավորի անվերապահ իշխանությանը:

Այդ իշխանության վերականգնման ու ամ-

[1] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 411.

[2] *Տե՛ս* Մխիթարայ Գօշի դատաստանագիրք հայոց իրաւաբանական հետազօտութիւնք հանդերձ ծանօթութեամբք, *Վահան Բաստամեանց, Վաղարշապատ, 1880 թ., էջ 300, այսուհետև՝* Դատաստանագիրք:

րապնդման երաշխիքներից մեկը, ըստ Գոշի, կենտրոնախույս ուժերին երկրից վերացնելու և արմատախիլ անելու պրոբլեմն էր: Ուղին, որ նշում էր Գոշը, այն էր, որ ապագա հայ թագավորը պետք է միմյանց դեմ հանի կենտրոնախույս ձգտումներ ունեցող իշխաններին ու ֆեոդալներին, նրանց ուժերը ջլատելու միտումով[1]:

Այսպիսով, ելնելով իր ժամանակաշրջանի սոցիալ-քաղաքական ռեալ իրավիճակից, Մխիթար Գոշը հանգեց «նպատակն արդարացնում է միջոցները» հայտնի դրույթին: Իր միտքը հիմնավորելու համար նրան տալիս է կրոնական երանգավորում, նշելով, որ անգամ ամենակարող արարիչը իր իշխանությունը ամրապնդեց նման մեթոդով[2]:

Մեծ իմաստասեր Գոշի միապետն օժտված է հումանիստական որոշ գաղափարներով և զրկված է անսահմանափակ իրավունքներ ունենալու հնարավորությունից: Նա պետք է հարմարվեր երկրի ներսում եղած կարգ ու կանոնին[3]:

Նկատի ունենալով Գոշի վերոհիշյալ միտքը, ակադեմիկոս Ս. Հովհաննիսյանը գրում է. «Թագավորը բացարձակ իշխանավոր չէ, այլ սոսկ ֆեոդալական սանդուղքի վերին աստիճանի վրա բազմած դատավոր»[4]: Առակներից մեկում ձկների թագավորը մեղադրում է ձկներին այն բանի համար, որ նրանք ուտում են իրենցից փոքրերին: Ձկները պատասխանում են թագավորին. «Վասն զի ի քէն ուսաք»: Առակում այլաբանորեն ցույց է տրված, որ օրենքի խախտումը սկսվում է վերևից և ոչ թե ներքևից: Օրինախախտումները կվերացվեն միայն այն ժամանակ, երբ երկրում օրինականությունը կպահպանեն թագավորներն ու իշխանները: Որովհետև, «...որով ինքեանք գործեն, զայն բամբասել կամելով առաւել ևս ի չարիս յորդորեն՝ քան թե կարհեն. զի գործով, քան բանիւ ի դեպ է լինել խրատուն»[5]:

Գոշը հայ սուվերեն թագավորությանը տընտեսապես ու քաղաքականապես ամրապնդելու, ինչպես նաև հզորացնելու միակ երաշխիքը համարում էր կենտրոնախույս ուժերը ջլատելը և թագավորից տնտեսական կախման մեջ պահելը:

---

1 *Տե՛ս Մխիթար Գոշ,* Առակներ: *Տեքստը ձեռագրերի համեմատությամբ և ներածությամբ՝ էմ. Պիվազյանի, Երևան, 1951 թ., էջ 45:*

2 *Նույն տեղը, էջ 45:*

3 Դատաստանագիրք, *էջ 306:*

4 *Ա. Հովհաննիսյան,* Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, *հ. 1, Երևան, 1957, էջ 285:*

5 *Մ. Գոշ,* Առակներ, *էջ 84:*

Գոշը Դատաստանագրքում, առակներում և այլ գործերում տեսականորեն ձևակերպում էր այն, ինչ պրակտիկորեն իրականացնում էին կիլիկյան հայ թագավորները՝ Կիլիկիայում, իսկ Զաքարյանները՝ Հայաստանում: Նրանք զենքով, իսկ Մխիթար Գոշը գրչով երկուստեք պայքարում էին միևնույն նպատակի համար: Հայտնի փաստ է նաև այն, որ Գոշը հանդիսանում էր Զաքարյանների հոգևոր հայրն ու խորհրդատուն:

Հետևապես, Գոշի կողմից արծարծված սոցիալ-քաղաքական ու իրավական հարցերը Զաքարյանների պրակտիկ գործունեության հիմքն էին ամրացնում:

Ըստ Գոշի, կենտրոնացված միապետական ձևը պետք է հենված լինի ֆեոդալական հիերարխիկ իշխանության վրա: Այս հարցում նա ընդունեց Դիոնիսիոս Արեոպագացու տեսակետը: Սակայն, հակառակ նրա, Գոշը գտնում էր, որ երկնային թագավորությունն է երկրայինի ընդօրինակությունը. «տեսեալ ազգի մարդկան զերկրաւորս թագաւորութիւն, ըստ կարգի և զերկրաւորն խնդրէին թագաւորութիւն»[1]:

Նկատի ունենալով Գոշի վերոհիշյալ միտքը, պրոֆ. Հ. Գաբրիելյանը գրում է. «Ոչ ոմն, վարդիկ երկնային թագավորության մասին ունեցած իրենց իդեաները հետևցնում են երկրային թագավորությունից: Սա չափազանց ուշագրավ և հայ փիլիսոփայական մտքի պատմության մեջ միանգամայն նոր հարցադրում էր»[2]:

Այդ հետևությունից Գոշը դիտում է աշխարհիկ և հոգևոր իշխանությունների հարաբերակցության հարցը: Ինչպես հայտնի է, այն վաղ և ուշ միջնադարյան տեսական մտքի պատմության մեջ վեճի առարկա էր դարձել, ըստ որում առաջնությունը հիմնականում տալիս էին հոգևոր իշխանությանը:

Իսկ Գոշը, շեղվելով միջնադարյան այդ տեսակետից, երկնային թագավորությունը կախման մեջ դրեց երկրայինից, կամ առաջինը երկրորդի ընդօրինակություն համարեց: Ըստ Գոշի, եպիսկոպոսը չպետք է մտնի աշխարհիկ հոգսերի մեջ, քանի որ նա կոչված է հոգևոր կարիքների համար, հակառակ դեպքում պաշտոնից կզրկվի[3]: Գոշի այս միտքը պրոֆ. Հ. Գաբրիելյանի իրավացի կարծիքով «որոշակիորեն ուղղված էր կրոնական դասի դեմ»[4]:

---

1 *Նույն տեղը, էջ 62:*

2 *Հ. Գաբրիելյան,* Հայ փիլիսոփայական մտքի պատմություն, *հ. 2, Երևան. 1958, էջ 106:*

3 *Մ. Գոշ,* Դատաստանագիրք, *մաս 1-ին, էջ 127—128:*

4 *Հ. Գաբրիելյան,* Հայ փիլիսոփայական մտքի պատմություն, *հ. 2, էջ 107:*



Մխիթար Գոշի կողմից նման հետևության հանգելը ուներ իր պատմական պատճառները: Հայ ժողովուրդը հաճախակի կորցնելով իր պետականությունը, որոշ չափով նրան փոխարինող էր տեսել հոգևոր իշխանությանը՝ եկեղեցուն, որը սակայն չկարողացավ և չէր էլ կարող լիովին ստանձնել աշխարհիկ իշխանության դերը: Մյուս պատճառը այն պատմական փաստն էր, որ Անիի հայ կաթողիկոսի կենտրոնախույս ձգտումները փոքր դեր չխաղացին Բագրատունյաց իշխանության կործանման գործում:

Նկատի ունենալով վերոհիշյալ փաստերը, ինչպես նաև ընդհանուր ելակետ ընդունելով հոգու և մարմնի հարաբերակցության իր տեսակետը, Գոշը նույն ձևով էլ լուծում է աշխարհիկ ու հոգևոր իշխանությունների փոխհարաբերության հարցը:

Առանձնացնելով հոգևոր և աշխարհիկ իշխանությունները, նա դրանով նրանց չհակադրեց միմյանց, այլ տվեց տարբեր ֆունկցիաներ և թագավորից հետո երկրորդ դեմքը երկրում համարեց կաթողիկոսին: Հայտնի է, որ նման սահմանազատում XIV դարում կատարեց Վ. Օկամը[1]:

Գոշն իր ինչպես սոցիալ-տնտեսական, այնպես էլ քաղաքական եզրահանգումներն անում էր հիմնականում պատմականի և իրականի համադրմամբ: Նրա աշխարհայացքի հիմքում ընկած էր ռեալ, իրական աշխարհը: Գոշի մեծությունն այն էր, որ լավ գիտակցելով դարաշրջանի պահանջները, ընդառաջ գնաց նրանց և իմաստավորեց:

Ավելին, չխտելով այն տեսությունը, ըստ որի թագավորները կարգվում են միայն աստծու կողմից և նրա կողմից էլ ազատվում կամ աքսորվում, Գոշը հնարավոր համարեց թագավորի կարգումը նաև հասարակ մարդկանց և իշխանների կողմից, որոնց և իրավունք վերապահեց ազատելու կամ աքսորելու իրենց կարգած թագավորներին, եթե վերջիններս չեն արդարացնում իրենց վրա դրված պարտականությունները և բեռ են դարձել ազգի վրա[2]:

Նման բանաձևումը ուներ հեռուն գնացող քաղաքական նպատակադրում: Եթե Գոշն իր Դատաստանագրքում օրինականացներ, որ թագավորները կարգվում են միայն աստծու կողմից, այսինքն՝ ամբողջությամբ որդեգրեր միջնադարյան կրոնական այդ տեսությունը, ապա կստացվեր, որ հայ ժողովուրդը անելիք չունի, և երկրում ծավալված ազգային-ազատագրական պայքարը կմնար օդից կախված:

---

1 *Տե՛ս,* История философии», т. 1, М., 1940, стр. 477.

2 *Տե՛ս Մ. Գոշ,* Դատաստանագիրք, *էջ 422:*

Այդ պատճառով նա օրինականացրեց վերոհիշյալ տարբերակումը, որով և գիտակցաբար ծառայեց ինչպես ֆատալիզմի, այնպես էլ արտաքին թշնամիների դեմ, որոնք հայ ժողովրդին տիրելու և ասիմիլացիայի ենթարկելու միակ երաշխիքը տեսնում էին հայ պետականության ընդմիշտ վերացման մեջ:

Հավանական է նաև այն, որ Գոշը վերոհիշյալ բանաձևումով նկատի է ունեցել նաև Բագրատունյաց ժամանակաշրջանը, երբ Անի—Շիրակ կենտրոնական թագավորության կողքին գոյություն ունեին նաև Լոռիի, Վանանդի և այլ մանր կենտրոնախույս թագավորություններ: «Այս տարբերակումը,— գրում է Ա. Հովհաննիսյանը,— չափազանց կարևոր էր Հայաստանի և Անդրկովկասի համար, ուր «տիեզերակալ» թագավորի կողքին եղել էին և գուցե դեռ կարող էին լինել նաև երկրային կամ նույնիսկ գավառային «դաստաստանով» սահմանափակված թագավորներ: Գոշի ճկուն բանաձևումները միջոց են տալիս վերջիններիս հաշվին բարձրացնել ու մեծարել «տիեզերակալ» թագավորին, ճանապարհ բանալով սրա իշխանության համակենտրոնացման առաջ»[1]:

Նշելով հայ պետականության վերականգնման ուղիները, Գոշ-իրավագետի աչքից չէին վրիպել նաև ապագայում վերականգնված հայ թագավորության արտաքին քաղաքականության հետ կապված մի շարք հարցեր, որոնք էական նշանակություն կունենային տվյալ պետականության ամրապնդման ու հզորացման համար: Ելնելով արտաքին ուժերի հիշտ հաշվեկշռման իրավիճակից, նա խորհուրդ էր տալիս հայ միապետին, որ վերջինս միշտ էլ ունենա իր դաշնակից պետությունը՝ անհրաժեշտության դեպքում միմյանց օգնության ձեռք մեկնելու համար: Որովհետև Գոշին հայտնի էր, որ սեփական ուժերին ապավինելը միշտ չէ, որ արդարացնում է իրեն:

Գոշն իր միտքը լակոնիկ ձևով իմաստավորել է հետևյալ առակում: Ծիծեռը իր ընտանիքը մկներից զերծ պահելու նպատակով կատվի մազ է իր բույնը տանում, որով ապահովվում է ձագերի անվտանգությունը: Գոշը գրում է. «Ըստ իմաստախոհության թռչնոյն առակս խրատէ, յորժամ յոտար թշնամեաց զգուշանամք ամրացեալք և յընտանեաց նեղիմք թըշնամեաց, ի նոցունց յընտանեաց զըտցուկ ընդդեմ նոցա օգնական մեզ»[2]: Դրանով նա աշխատում էր, որ Հայաստանը քրիստոնեական Արևելքում ունենա իր հենակետը, որովհետև վախենալու և զգուշանալու պատճառներ շատ

---

1 *Ա. Հովհաննիսյան,* Դրվագներ..., *հ. 1, էջ 286:*

2 *Գոշ,* Առակներ, *էջ 110—111:*

կային: «Զի շունք և արծիւք և մարդիկ ևս որսան զմեզ, որով իրաւացի է երկնչիլ»: Ս.-ոսակս ցույց է տալիս, ասում էր Գոշը, որ «զի բազում են թշնամիք կենաց մեր, և միշտ երկիւղի զգուշանալի է»[1]: Դժվար չէ նկատել, որ Գոշը նկատի ուներ արտաքին թշնամիներին, որոնց դեմ մենակ պայքարելը, ինչպես փորձը ցույց էր տվել, անհնարին էր: Հետևաբար, դաշնակից պետության անհրաժեշտությունը կենսական հարց էր: Եթե Գոշը սոցիալական տարբեր աստիճանների վրա գտնվող հակադիր դասակարգերի հաշտեցման եզրեր էր փնտրում երկրում խաղաղություն, կարգ ու կանոն ստեղծելու նպատակով, ապա գրեթե նույն քաղաքականությունն առաջադրում էր արտաքին հարաբերությունների մեջ՝ շատ լավ գիտակցելով, որ Հայաստանում պետականության վերականգնման ու ամրապնդման երաշխիքներից մեկն էլ խաղաղության պահպանումն է: Պատահական չէ, որ նա իր գրեթե բոլոր գործերում տարբեր առիթներով անդրադարձել է այդ հարցին և միշտ տվել հումանիստական լուծում:

Այսպես, վրացիներին ուղղած հայտնի նամակում Մխիթար Գոշը ժողովուրդների սովորությունների և ծեսերի միջև եղած տարբերությունները և գաղափարների հակասությունները չէր հակադրում միմյանց: Լուծումը չէր տեսնում պատերազմի մեջ, այլ առաջարկում էր միմյանց հետ հաշտ ու խաղաղ ապրելու հումանիստական գաղափարը:

Գոշի առողջ ու բանական հայրենասիրությունն թելադրում էր իրերն ու երևույթները գնահատել ռեալ կերպով: Առաջադրելով ժողովուրդների միջև խաղաղության միտքը, Գոշն ավելի առաջ գնաց և հանգեց «...զի չիք ազգ որ բարի կարգ ոչ ունի և խոտան» լակոնիկ արտահայտված, սակայն սոցիալ-քաղաքական լայն բովանդակություն պարունակող հետևության: Ժողովուրդների միջև խաղաղություն հաստատելու միտումով, խորհուրդ տալով հայ թագավորին, որպեսզի վերջինս օգտագործի բոլոր հնարավոր միջոցներն ու պայմանները խաղաղության պահպանման համար, նա միևնույն ժամանակ գտնում էր, որ կարող է խախտվել այդ ձգտումը, եթե պատերազմի մեջ ներքաշեն: Պատերազմի հաղթական ավարտից հետո չպետք է արի մատնել թշնամու զինվորներին, այլ մահապատժի ենթարկել միայն նրանց, ովքեր հրահրել են պատերազմը[2]:

Այդ հոդվածում առկա է Սասունցի Դավիթ էպոսի ազդեցությունը և շատ բանով հիշեցնում է Դավթի ու Ծերունու երկխոսությունը, ինչպես և առաջինի ու Մսրա Մելիքի մենամարտի պատկերը: Միջնադարյան իր ժամանակի օրենսգիտության մեջ նման հումանիստական հարցադրումները շատ չեն:

Ելնելով հայ, գուցե և իրեն հայտնի մյուս ժողովուրդների պատմությունից, Գոշը գտնում է, որ անհրաժեշտ է ճիշտ գնահատել ուժերի հարաբերակցությունը, նոր միայն ժողովրդին ազատագրական կռվի կոչել: «Սոյնպէս և մեզ պարտ է միաբանութեամբ և զգոյշ կեալ, և պատիւ միմեաց դնել, և պահել ի չարէ գանձին ընկերին»[1]: Հետևաբար, նման իրավիճակից դուրս գալու միակ ելքը Գոշը տեսնում էր առաջին հերթին ազգի հավաքական ուժի, այնուհետև դաշնակից պետության անշահախնդիր օգնության մեջ:

Խոսելով Դատաստանագիրք գրելու պատճառների մասին, դրանցից մեկն էլ նա համարում է այն, որ ինքը կամեցել է «գրրով դատաստանիս զնոսա իբրեւ ի քնոյ զարթուցանել»[2]: Սա, անշուշտ, կարելի է համարել ամենահիմնական շարժառիթը: Մեծ հայրենասերը հայ ժողովրդին քաղաքական քնից արթնացնելու և ազգային ազատագրական պայքարի մեջ ներգրավելու կոչ էր անում: Նա գտնում էր, որ չպետք է խոնարհվել չարի դեմ, այլ պայքարել մինչև նահատակվելը:

Դժվար չէ նկատել, որ Գոշի համար XII դարի կարևոր և հրատապ, եթե ոչ ամենակարևոր, պրոբլեմներից մեկը հայ պետականության վերականգնումն էր, որի մեջ նա տեսնում էր իր ժողովրդի դարավոր իղձերի ու ցանկությունների իրականացումը: Դարեր շարունակ կորցրած լինելով ազգային պետականությունը և ենթարկվելով այս կամ այն նվաճողի քմահաճույքներին, հայ ժողովուրդն իր վրա էր կրել նաև նվաճողի սոցիալ-հոգեբանության որոշ հատկանիշներ, որոնք խոչընդոտում էին հայ ժողովրդին՝ միասնաբար հանդես գալու և դիմակայելու օտար նվաճողին:

Տալով իր ժամանակաշրջանի ռեալ նկարագիրը, Մխիթար Գոշը Դատաստանագրքի 2-րդ մասի Ա հոդվածի վերջում գրում է, որ թագավորի մասին իր օրենքները կարդացողը կարող է դրանք համարել սոսկ երազանք, որովհետև եթե չունենք թագավորություն, ապա ինչ խոսք կարող է լինել թագավորի մասին: Սակայն միշտ պետք է նկատի ունենալ, ասում է Գոշը, որ երկրի վրա ամեն ինչ անցողիկ է ու փոփոխական, այդ թվում և թագավորությունը:

Լինելով լավատես մտածող, Գոշը հույս էր հայտնում, որ Հայաստանում կստեղծվի ազգային պետականություն (թագավորություն). եթե այժմ չունենք, հետագայում կլինի, ուրեմն այս վիճակն անցողիկ է ու փոփոխական: Պատահական չէ, որ Գոշն իր ճկուն ու հաշվենկատ բանաձևերի միջոցով ուղիներ էր փնտրում հարթելու սոցիալ-քաղաքական ու իրավական ծայրահեղ հակասությունները, որոնք շատ վատ էին անդրադառնում ազգի ընդհանուր վիճակի վրա:

Թեև Գոշն իր սոցիալ-քաղաքական իմաստասիրությամբ ֆեոդալական հասարակարգի գաղափարախոսն էր, սակայն, ինչպես նկատեցինք, այդ գաղափարախոսության հիմնական տարրերը աշխարհիկ բնույթ էին կրում և բխում էին տվյալ դարաշրջանի պահանջներից:

Մեծ իմաստասերի աչքից չէր վրիպում աշխարհիկ և հոգևոր ֆեոդալների կողմից վարած ոչ ճիշտ քաղաքականությունը: Դրա էության բացահայտումն ու գնահատումը հրատապ բնույթ էին կրում տվյալ ժամանակաշրջանում:

Գոշի քննության կարևոր օբյեկտներից էր նաև պետության ու մարդ-անհատի հարաբերության հարցը:

Նրա սոցիալ-քաղաքական իմաստասիրությունը ընդհանուր գծերով առաջադիմական էր: Գոշի կողմից կատարված ճկուն բանաձևումները հետապնդում էին մեկ հիմնական նպատակ՝ մի կողմից չափավորել տիրող դասակարգի ճնշումն ու շահագործումը, իսկ մյուս կողմից՝ զսպել ցածր խավի հուզումներն ու ընդվզումները: Դրա լավագույն ապացույցն է, օրինակ, նաև 154-րդ առակը: Դրանով իսկ Գոշը ուղիներ էր հարթում քաղաքական իշխանությունը երկրում վերականգնելու համար: Իսկ միջնադարի պայմաններում նման քաղաքականությունը Ֆ. Էնգելսը գնահատել է շատ բարձր, համարելով այն միջնադարյան առաջադիմության կարևոր լծակներից մեկը[1]:

Գոշի հասարակական-քաղաքական հայացքների համեմատական առաջադիմականությունը կարելի է համառոտակի նշել հետևյալ կերպ:

Ինչպես ճիշտ է շեշտել ակադեմիկոս Ա. Գ. Հովհաննիսյանը, Գոշը չէր հարում մարդկանց բնական հավասարության տեսակետին: Նա համոզված էր, որ տկարի հնազանդումը հզորին՝ աստծուց է: Այսուհանդերձ, Գոշը աստվածային օրենքով չէր արդարացնում ֆեոդալական հասարակության բազում անարդարությունները, թեև ջանք չէր խնայում մեղմելու ստրկական և ճորտական հարաբերությունների բացասական հետևանքները: Սակայն չպետք է մոռանալ, որ Գոշը դատապարտում էր անհնազանդությունը թագավորական իշխանության: Նա չէր խորշում հուշել իշխողին՝ «Բաժանիր և տիրիր» քաղաքական սկզբունքը: Միաժամանակ հիշեցնելով, թե փոքրերը զորանում են իմաստությամբ և դիմակայում իշխողներին, որոնցից հարկավոր է զգուշանալ:

Ելնելով այն իրողությունից, որ ժամանակների փոփոխման հետևանքով փոխվում են և օրենքներն ու մարդկանց ապրելակերպերը, Գոշը ուսուցում էր սուրբ գիրքը կիրառելիս հաշվի առնել օրվա պահանջները:

Մխիթար Գոշի Դատաստանագիրքը մարդկանց ամուսնա-ընտանեկան հարաբերությունները կարգավորելիս, հաճախ իրոք հումանիստական նկատառումներով է առաջնորդվում: Թույլատրելով կանանց առքն ու վաճառքը, համենայնդեպս, Գոշը էական դեր էր հատկացնում համակրանք և հակակրանք գործոններին՝ ամուսնական կյանքը օրինականացնելիս: Ի դեպ, Գոշը համամիտ չէր իր դարում իշխող կրոնական այն հայացքին, ըստ որի կնոջ միակ ֆունկցիան մանկածնությունն է ու տնային ստրկությունը: Մեր ասածի վկայությունը Դատաստանագրքի «Ժ», «ԽԱ» և «ԼԶ» հոդվածներն են: Չմոռանանք շեշտել, որ ըստ Գոշի, այն օրենքը, որը դստերը զրկում է ժառանգությունից, աստվածային չէ, այլ բարբարոսական: Այս առումով ուշագրավ է նրա մեկ այլ հոգսը, որի համար նա խարազանում էր հայ ավագներին ու իշխաններին, երբ նրանք նյութական և իշխանավորական միտումներով ամուսնական կապեր են հյուսում օտար կղեքիչների հետ:

Իր սոցիալ-քաղաքական իմաստասիրությունը Գոշը գիտակցաբար կառուցեց ազգային պետականություն ստեղծելու հենքի վրա: Հայտնի է, որ ամեն մի տեսություն, եթե օժտված է հումանիստական տարրերով, այս կամ այն չափով կարող է նպաստել ժողովրդի առաջադիմությանը: Այդ իսկ առումով, Գոշի քաղաքական իմաստասիրությունն իր դրական դերը խաղաց հայ քաղաքական մտքի զարգացման գործում:

Լինելով դարաշրջանի իմաստուն այրերից մեկը, Մխիթար Գոշը եկավ ինչ-որ չափով հաղթահարելու կրոնական դոգմաները և դրանց կեղևից դուրս բերելու, որոշակիորեն աշխարհականացնելու հայ քաղաքական պայքարի տեսությունը: Դրանից ելնելով էր, որ, ինչպես դիպուկ նկատել է ակադեմիկոս Ա. Հովհաննիսյանը, նա չընդունեց և իր քաղաքական իմաստասիրությանը խորթ համարեց բոլոր տեսակի կեղծ մարգարեությունները ու սուտ երազները:

[1] Նույն տեղը, էջ 92:
[2] Գոշ, Դատաստանագիրք, էջ 307:

[1] Գոշ, Առակներ, էջ 111:
[2] Գոշ, Դատաստանագիրք, Նախաբան, էջ 10:

[1] Տե՛ս, К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 410.

# ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԸ



Դժվար է հաշտվել ննգաղավ մահվան հերթական չարագործության հետ ու համոզվել, որ այլևս կենդանի չէ գաղափարական կոմունիստն ու գերհամեստ ընկերը, կարկառուն կուսակցական-հասարակական գործիչ ու շնորհալի գիտնական, ակնառու մանկավարժ և անխոնջ ժուռնալիստ՝ Վարդան Ավետիսի Ավետիսյանը (1911—1975 թթ.):

Նա, հիրավի, գաղափարական կոմունիստ էր, կուսակցության մեծ գործին անսահման հավատարիմ, և իր ողջ գիտակցական կյանքն անմնացորդ նվիրաբերեց կոմունիզմի կառուցմանը: Իր քաղաքական գործունեության առաջին տարիներից մինչև վերջին շունչը նա ապրեց ու գործեց իբրև համոզված լենինյան, ոռդեգրած իր վեհ աշխարհայացքի ու առօրյա հույժ պատասխանատու գործերի նախանձելի ներդաշնակությամբ:

Հավատարիմ իր բյուրեղյա խառնվածքին և մարքսիստական սկզբունքայնությանը, Վ. Ավետիսյանը միշտ գտնվել է գաղափարախոսական ճակատի առաջին դիրքերում, իր պատկառելի ավանդը մուծել հայ ժողովրդի պատմության ոլորտն առհասարակ և պատմակուսակցական գիտության բնագավառը մասնավորապես: Նա այն երջանիկ անձերից մեկն էր, որ հար վերապրում էր իր նվիրական հերոսների՝ Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի և նրանց սերնդին պատկանող բազմաթիվ մարտիկների սխրալի կյանքով: Ով ապրել ու գործել է Վ. Ավետիսյանի հետ, հանձին նրա տեսել է կուսակցության ու աշխատավոր ժողովրդի խոհուն ու կարգապահ գործչին, նոր աշխարհի կառուցման ազնիվ ու եռանդուն մշակին, սովետական մարդու անբասիր տիպարին ու դաստիարակին: Նա հպարտ էր, որ իրեն վիճակված էր ընթանալ կուսակցության գաղափարական սերմնացանների կուռ շարքերում և կոմունիզմի հատիկները ցանել մեծ Հոկտեմբերի խոր ակոսներում:

Շուրջ քառորդ դար Վ. Ավետիսյանի անդուլ գործունեությունն անմիջականորեն առնչվել է մեր ամսագրի հետ. 1951—1953 թթ. նա վարել է գլխավոր խմբագրի պաշտոնը, իսկ հետագայում եղել է ամսագրի բեղմնավոր թղթակիցն ու կոլեգիայի գործունյա անդամը:

Վ. Ա. Ավետիսյանի պայծառ կերպարն ու հմայիչ խառնվածքն անջնջելի կմնան նրանց սրտերում, ովքեր երբևէ ճանաչել են նրան ու աշխատել նրա հետ:

---

**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ. (պատ. քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ԿՃՈՋՅԱՆ Թ. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции: 375033 Ереван-33. Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 08780 Պատվեր 2326 Թղթի չափսը 70×108 1/16, Տիրաժ 13.600 Գինը 20 կոպ.

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 5/XI 1975 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ավ. Իսահակյան փող. № 28:





# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ: Մ., «Политиздат», 1975:

Ի. ՉԱՁԵՐՍԿԻ, Ա. ԼՅՈՒԲԱՐՍԿԻ— Լենին: Վտարանդիություն և Ռուսաստան: Մ., «Политиздат», 1975:

Ն. Ի. ՏԱՐԱՍԵՆԿՈ— Միասնական սովետական ժողովուրդ: Մ., «Политиздат», 1975:

Ի. Գ. ՅՈՒՎԵՐԿԱԼՈՎ— Կուսակցական վերահսկողության գործունեությունը: Մ., «Политиздат», 1975:

Վ. ՉԱԼՈՅԱՆ— Հայոց փիլիսոփայության պատմություն: Ե., ԳԱ հրատ., 1975:

Է. ԳԵՎՈՐԳՅԱՆ— Հասարակական առաջադիմության մեջ կնոջ դերի հարցը հայ իրականությունում: Ե., «Գիտելիք ընկ.» հրատ., 1975:

Գ. ՆԵՐՍԻՍՅԱՆ— Սոցիալիստական մրցության կուսակցական ղեկավարությունը: «Հայաստան» հրատ., 1975:

Ա. Մ. ՎԱՍԻԼԵՎՍԿԻ— Ողջ կյանքի գործը: Մ., «Политиздат», 1975:

Միխ. ՄԱԿՈՎԵԵՎ— Հերոսական կյանքի էջեր (Մ. Վ. Զախարովի մասին): Մ., «Политиздат», 1975:

ԼԵ ԶՈՒԱՆ— Ընտիր հոդվածներ և ճառեր (1970—1975): Մ., «Политиздат», 1975: Ժողովածուում զետեղված են Վիետնամի աշխատավորների կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Լե Զուանի ընտիր հոդվածներն ու ճառերը:

ԼՈՒԻՋԻ ԼՈՆԳՈ— Ընտիր հոդվածներ և ճառեր (1946—1974): Մ., «Политиздат», 1975:

ՎԻԿՏՈՐ ՄԱԵՎՍԿԻ— Խաղաղ օրերի մարտերը, II լրացված հրատ.: Մ., «Политиздат», 1975:

Վ. ՊՈՎՈԼՅԱԵՎ, Վ. ՏՐԱՎԻՆՍԿԻ— Բալլադ գործունյա մարդկանց մասին: Մ., «Политиздат», 1975:

Ս. ՌԱԶԳՈՆՈՎ— Հավերժականի պահապանները: Մ., «Молодая гвардия» հրատ., 1975:

Ակնարկները նվիրված են Հայրենական մեծ պատերազմի տարիներին պատմական և կուլտուրական հուշարձանները փրկած, գեղարվեստական արժեքները պահպանած մարդկանց հերոսագործություններին:

Բ. Մ. ՄԵԴՆԻԿՈՎ— Դարվինիզմը XX դարում: Մ., «Советская Россия» հրատ., 1975:

Բ. Ա. ՌԱՅԶԲԵՐԳ, Ե. Պ. ԳՈԼՈՒԲԿՈՎ, Լ. Ս. ՊԵԿԱՐՍԿԻ— Սիստեմային մոտեցում հեռանկարային պլանավորմանը: Մ., «Экономика» հրատ., 1975:

ՅՈՒ. Վ. ԲՈՐՈԶԴԻՆ— Գնագոյացումը և արտադրանքի սպառարժեքը: Մ., «Экономика» հրատ., 1975:

Լ. Վ. ՉԵՐԿԱՇԻՆ— Կուլտուրական շինարարության պլանավորումը: Մ., «Экономика» հրատ., 1975:

Ի. Լ. ԲԱՏՈՒԽՏԻՆ— Աշխատանքի և աշխատավարձի վերլուծության մեթոդի կատարելագործումը: «Экономика» հրատ., 1975:

Հայ գրողները Վալերի Բրյուսովի մասին: «Հայաստան» հրատ., 1975:

ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ— Երկերի ժողովածու 6 հատորով. հ. 1, 2, 3: «Հայաստան» հրատ., 1975:

ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ— Աբու-Լալա-Մահարի (հայերեն, ռուսերեն, անգլերեն, ֆրանսերեն): «Հայաստան» հրատ., 1975:

ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ— Հատընտիր (ռուսերեն): «Հայաստան» հրատ., 1975:

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## Ստվարաթղթե սառնարան

*Մոսկվայի տարայի գիտահետազոտական ինստիտուտի լաբորատորիայի և մսի ու կաթի արդյունաբերության տեխնոլոգիայի ինստիտուտի մասնագետները պատրաստել են ստվարաթղթե սառնարան՝ մսի փոխադրման համար։ Պենոպլաստով երեսպատված շերտավոր ստվարաթղթից պատրաստած արկղում 40 կգ սառեցրած միսը կարող է պահպանվել երեք օր։ Խանութ հասցնելուց հետո այն այլևս անհրաժեշտ չէ անմիջապես դնել տեղի սառնարանը։*

## Պնևմատիկ մուրճ

*Ուրալի ծանր մեքենաշինության գործարանում կիրառվում է պնևմատիկ մուրճ, որը մեխը խփում է շատ արագ, ինչպես գնդացիրը։ Դրա պահունակը միանգամից լիցքավորվում է մինչև 200 մմ երկարություն ունեցող 250 մեխով։ Մինչ սովորական մուրճը խփում է մեկ մեխ, նույն ժամանակամիջոցում պնևմատիկը հասցնում է մեխել տասը։*

## Ինչպես դանակը յուղի մեջ

*Ավտոճանապարհների տակ մեծ տրամագծի խողովակներ անցկացնելիս հարկ է լինում խրամ փորել, փոխելով ավտոմեքենաների երթևեկության ուղին։ ԳՖՀ-ում ստեղծված մեքենան հնարավորություն է ընձեռում աշխատանքային 8 ժամում, 3—9 մետր արագությամբ, գետնի տակ մղել 1.200 մմ տրամագծով բետոնե և 1.400 մմ պողպատյա խողովակներ՝ նայած գրունտի բնույթին։ Խողովակի առջևին ամրացվում է պողպատե կտրիչ։ Մեքենան ղեկավարում է մեկ մարդ։ Խողովակից հողը դուրս է մղվում կոնվեյերով։*

## Ջրում և ցամաքում

*Պենոպոլիուրետանը թեթև փրփրավուն պլաստմասսա է. շնորհիվ իր թեթևության, ամրության, ճկունության լայնորեն կիրառվում է տեխնիկայում։ Ֆինլանդիայում վերջերս սկսել են թողարկել նավակներ պենոպոլիուրետանից։ Այդպիսի նավակը շատ թեթև է ու ամուր և խնամք համարյա չի պահանջում։ Անգլիական ավտոկոնստրուկտորներն սկսել են ավտոմեքենայի բամպերը պատրաստել պենոպոլիուրետանից, որն իր ամրության շնորհիվ այլ մեքենայի հետ բախվելիս չի փշանում, իսկ վնասվելիս հեշտությամբ ուղղվում է։*

## Գազ՝ բենզինի փոխարեն

*Փարիզում շահագործվում են 20 տեղանոց փորձնական ավտոբուսներ, որոնք բանում են բնական հեղուկ գազով։ Հետնամասում տեղադրված վեցգլանանոց շարժիչը քիչ է տարբերվում բենզինաշարժիչից։ Գազը պահպանվում է երկգլանանոց ռեզերվուարում C-ի 160° ջերմության պայմաններում. լիցքավորվում է 6 վայրկյանում։ Մի բաքը բավականացնում է 150 կմ ճանապարհին։ Առավելություն է նաև վնասակար արտամղումների բացակայությունը. մթնոլորտ են նետվում միայն ածխաթթու գազ և ջուր։*

## Բույսերի գաղտնի զենք:

*Ինչպե՞ս են գիշատիչ բույսերը, օրինակ՝ ցողաբույսը, ոչնչացնում միջատներին։ Առաջ կարծում էին, թե զոհերը՝ միջատները, ուղղակի փակչում են ծաղիկները պատող լորձին։ Բայց վերջերս ամերիկյան գիտնականներին հաջողվել է ցողաբույսի հյութից անջատել միջատներին կաթվածահարող երկու նյութ, որոնք պատկանում են ամինների դասին. դրանցից մեկը՝ կոնիինը, թունավոր ալկալոիդ մոլեխինդն է, որը վաղուց ի վեր ծանոթ է թունագետներին։ Գիշատիչ բույսերի թույնի ուսումնասիրությունը կօգնի ստեղծելու պայքարի նոր միջոցներ գյուղատնտեսական վնասատուների դեմ։ Այժմ այդ նպատակով փորձում են օգտագործել պարսկական երիցուկի ազդող նյութի նմանակը՝ պիրետրինը։*